Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2-3 (80-81)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2-3 (80-81)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Ի. ՍՏԱԼԻՆ

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՅԵՐԵՔ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ՃԱՌ ՄՈՍԿՎԱՅԻ ԽՈՐՀ. ԴԻ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ

*Ընկերնե՛ր, թույլ տվեք մեր կուսակցության Կենտրոնական Կոմիտեի անունից վողջունել մեր Կարմիր Բանակի մարտիկներին, մեր Կարմիր նավատորմի մարտիկներին, մեր Կարմիր ավիացիայի մարտիկնե-*

րին, վերջապես, մեր նախակոչիկներին, ԽՍՀՄ-ի զինված բանվորներին:

Կուսակցությունը հպարտանում է, որ իրեն հաջողվեց բանվորների ու գյուղացիների օգնությամբ ստեղծել աշխարհում առաջին Կարմիր Բանակը, որը, մեծագույն մարտերում պաշտպանել ու պաշտպանում է բանվորների ու գյուղացիների ազատությունը:

Կուսակցությունը հպարտանում է, որ Կարմիր Բանակին հաջողվեց պատվով անցնել մեր երկրի բանվոր դասակարգի ու գյուղացիության ներքին ու արտաքին թշնամիների դեմ մղած դաժանագույն մարտերի ծանր ուղին, որ նրան հաջողվեց ձևավորվել որպես մեծագույն մարտական հեղափոխական ուժ՝ ի սարսափ բանվոր դասակարգի թշնամիների, հուսախություն բոլոր ճնշվածների ու ստրկացվածների:

Կուսակցությունը հպարտանում է, որ Կարմիր Բանակը՝ անցնելով բանվորներին ու գյուղացիներին կալվածատերերի ու կապիտալիստների լծից ազատագրելու երկար ուղին, իրեն համար, վերջապես, իրավունք նվաճեց տոնելու իր հոբելյանը, իր ծննդյան տասներորդ տարում:



Ընկերնե՛ր, ինչի՞ մեջ է մեր Կարմիր Բանակի ուժը, ո՞րտեղ է նրա ուժի աղբյուրը: Ինչի՞ մեջ են կայանում այն առանձնահատկությունները, վորոնք արմատական կերպով տարբերում են մեր Կարմիր Բանակը աշխարհում երբևիցե գոյություն ունեցած բոլոր և ամեն տեսակի բանակներից: Ինչի՞ մեջ են այն առանձնահատկությունները, վորոնք կազմում են մեր Կարմիր Բանակի ուժի ու հզորության աղբյուրը:

Մեր Կարմիր Բանակի առաջին և հիմնական առանձնահատկությունը կայանում է նրանում, վոր նա ազատագրված բանվորների ու գյուղացիների բանակն է, նա Հոկտեմբերյան հեղափոխության բանակն է, պրոլետարիատի դիկտատուրայի բանակը: Մինչև այժմ գոյություն ունեցող բոլոր բանակները, ինչ կազմ էլ վոր նրանք ունենան, հանդիսանում են կապիտալի իշխանության ամրապնդող բանակներ: Նրանք յեղել և մնացել են կապիտալի տիրապետության բանակներ: Բոլոր յերկրների բուրժուաները ստում են, յերբ ասում են, թե բանակը քաղաքականապես չեզոք է: Ճիշտ չէ սա: Բուրժուական պետություններում բանակը զրկված է քաղաքական ի-

բավունքներից, նա հեռացված է քաղաքական արենայից, սա ճիշտ է: Սակայն սա ամենևին չի նշանակում, թե նա չեզոք է քաղաքականապես: Ընդհակառակը, միշտ և ամենուրեք, կապիտալիստական բոլոր երկրներում բանակը ներգրավվել ու ներգրավվում է քաղաքական պայքարի մեջ, ծառայելով վորպես բանվորներին ճնշելու գործիք: Մի՞թե սա ճիշտ չէ, վոր բանակն այնտեղ ճնշում է բանվորներին, վոր նա այնտեղ տերերին պատվար է ծառայում: Ի տարբերություն այդպիսի բանակներից, մեր Կարմիր Բանակն այն առանձնահատկությունն ունի, վոր նա հանդիսանում է բանվորների ու գյուղացիների իշխանությունն ամրապնդելու գործիք, պրոլետարիատի դիկտատուրան ամրապնդելու գործիք, կալվածատերերի ու կապիտալիստների լծից բանվորներին ու գյուղացիներին ազատագրելու գործիք: Մեր բանակը աշխատավորների ազատագրման բանակ է:

Արդյոք ուշադրություն դարձրե՞լ եք դուք, ընկերնե՛ր, վոր հին ժամանակ, և հենց հիմա էլ կապիտալիստական երկրներում ժողովուրդը վախենում էր և շարունակում է վախենալ բանակից, վոր ժողովրդի ու բանակի միջև գոյություն ունի



անջրպետ, վորը բանակը բաժանում է ժողովրդից: Ե՛, իսկ մեզնո՞ւմ: Մեզնում, ընդհակառակը, ժողովուրդն ու բանակը կազմում են մի ամբողջություն, մի ընտանիք: Աշխարհում վոչ մի տեղ չկա ժողովրդի կողմից դեպի բանակը ցուցաբերվող այնպիսի սիրալիր ու հոգատար վերաբերմունք, ինչպես մեզնում: Մեզնում բանակը սիրում են, նրան հարգում են, նրա մասին հոգ են տանում: Ինչո՞ւ: Վորովհետև բանվորներն ու գյուղացիներն աշխարհում առաջին անգամն են ստեղծել իրենց սեփական բանակը, վորը ծառայում է վո՛չ թե տերերին, այլ նախկին ստրուկներին, ներկայումս ազատագրված բանվորներին ու գյուղացիներին:

Ահա թե վորտեղ է մեր Կարմիր Բանակի ուժի աղբյուրը:

Իսկ ի՞նչ է նշանակում ժողովրդի սերը դեպի իր բանակը: Այդ նշանակում է, վոր այդպիսի բանակը կունենա ամենաամուր թիկունք, վոր այդպիսի բանակն անհաղթելի յե հանդիսանում: Ի՞նչ բան է առանց ամուր թիկունքի բանակը: Վոչինչ: Ամենամեծ բանակները՝ ամենալավ զինված բանակները, առանց ամուր թիկունքի, առանց թիկունքի կողմից, աշխատավոր

բնակչության կողմից ցուցաբերվող օգնության ու համակրանքի, քայքայվում ու փոշիանում էին։ Մեր բանակն աշխարհում միակն է, որը բանվորների ու գյուղացիների կողմից համակրանք ու օգնություն է վայելում։ Սրա մեջ է նրա ուժը, սրա մեջ է նրա ամրությունը։

Ահա թե, ամենից առաջ, ինչով է մեր Կարմիր Բանակը տարբերվում աշխարհում գոյություն ունեցած և գոյություն ունեցող մյուս բոլոր տեսակի բանակներից։

Կուսակցության ցանկությունները, նրա խնդիրը կայանում է նրանում, որ Կարմիր Բանակի այս առանձնահատկությունը, բանվորների ու գյուղացիների հետ ունեցած նրա այս մտերմությունը, նրա յեղբայրական կապը պահպանվի ու ամրապնդվի մեր Կարմիր Բանակի համար։

Մեր Կարմիր Բանակի յերկրորդ առանձնահատկությունը կայանում է նրանում, որ նա, մեր բանակը, հանդիսանում է որպես մեր յերկրի ժողովուրդների միջև յեղող յեղբայրության բանակ, որպես մեր յերկրի ճնշված ժողովուրդների ազատագրման բանակ, որպես մեր յերկրի ժողովուրդների ազատության ու անկախության պաշտպանության բանակ։ Հին ժամանակ բա-



նակները սովորաբար դաստիարակվում էին շովինիզմի ոգով, զավթողականության ոգով, օտար ժողովուրդների հնազանդեցնելու անհրաժեշտության ոգով։ Հենց սրանով է բացատրվում, որ հին տիպի բանակները, կապիտալիստական բանակները դրանով մեկտեղ նաև գաղութային բանակներ էին։ Սրանում էր կայանում հին բանակների հիմնական թուլություններից մեկը։ Մեր բանակն արմատական կերպով տարբերվում է գաղութային բանակներից։ Նրա ամբողջ էությունը, նրա ամբողջ կառուցվածքը հիմնվում է մեր յերկրի ժողովուրդների միջև բարեկամական կապերի ամրապնդման վրա, ճնշված ժողովուրդների ազատագրման գաղափարի վրա, Խորհրդային Միության կազմի մեջ մտնող սոցիալիստական հանրապետությունների ազատության ու անկախության պաշտպանության գաղափարի վրա։

Սրանում է մեր Կարմիր Բանակի ուժի ու հզորության յերկրորդ և հիմնական աղբյուրը։ Սրանում է այն բանի գրավականը, որ կրիտիկական մոմենտում մեր բանակը կգտնի մեր անծայրածիր յերկրում

բնակվող բոլոր ու ամեն տեսակի ազգությունների միլիոնավոր մասսաների մեջ մեծագույն աջակցություն:

Կուսակցության ցանկությունները, նրա խնդիրը կայանում է նրանում, որպեսզի այս առանձնահատկությունը ևս պահպանվի ու ամրապնդվի մեր Կարմիր Բանակի համար:

Վերջապես, Կարմիր Բանակի յերրորդ առանձնահատկությունը: Այդ առանձնահատկությունը կայանում է մեր ամբողջ Կարմիր Բանակը թափանցող ինտերնացիոնալիզմի ոգու մեջ, ինտերնացիոնալիզմի զգացմունքների մեջ: Կապիտալիստական յերկրներում բանակները սովորաբար դաստիարակվում են ատելության ոգով դեպի մյուս ժողովուրդները, ատելության ոգով դեպի մյուս պետությունները, ատելության ոգով դեպի մյուս յերկրների բանվորներն ու գյուղացիները: Ինչի՞ համար է արվում այս: Նրա համար, որպեսզի պետությունների միջև, ազգությունների միջև, յերկրների միջև ռազմական ընդհարումներ ծագելու դեպքում բանակը վերածվի հլու-հնազանդ մի հոտի: Սրանումն է կապիտալիստական բոլոր բանակների թուլության աղբյուրը: Մեր Բա-



նակը կառուցված է բոլորովին այլ հիմունքների վրա: Մեր Կարմիր Բանակի ուժը, ընկերնե՛ր, կայանում է նրանում, որ նա իր ծննդյան առաջին իսկ օրից դաստիարակվում է ինտերնացիոնալիզմի ոգով, դեպի մյուս ժողովուրդները հարգանք տածելու ոգով, դեպի բոլոր յերկրների բանվորները սեր և հարգանք ունենալու ոգով, յերկրների միջև խաղաղության պահպանելու ու հաստատելու ոգով: Յեվ հենց այն պատճառով, որ մեր բանակը դաստիարակվում է ինտերնացիոնալիզմի ոգով, բոլոր յերկրների բանվորների շահերի միասնության ոգով, հենց այդ պատճառով նա, մեր բանակը, հանդիսանում է որպես համաշխարհային հեղափոխության բանակ, որպես բոլոր յերկրների բանվորների բանակ: Յեվ այն բանը, որ այս հանգամանքն է հանդիսանում որպես մեր բանակի ուժի ու հզորության աղբյուր, այդ բանը յերբևիցե կիմանան բոլոր յերկրների բուրժուաները, յեթե նրանք սիրտ կանեն հարձակվել մեր յերկրի վրա, որովհետև նրանք այն ժամանակ կտեսնեն, որ ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակված մեր Կարմիր Բանակը անթիվ քանակությամբ բարեկամներ

ու դաշնակիցներ ունի աշխարհի բոլոր մասերում, Շանհայից մինչև Նյու-Յորք, Լոնդոնից մինչև Կալկուտտա:

Ահա, ընկերնե՛ր, այն յերրորդ հիմնական առանձնահատկությունը, վոր թափանցում է մեր բանակի հոգին և ստեղծում նրա ուժի ու հզորության աղբյուրը:

Կուսակցության ցանկությունները, նրա խնդիրը կայանում է նրանում, վոր այս առանձնահատկությունը ևս պահպանվի ու ամրապնդվի մեր բանակի համար:

Այս յերեք առանձնահատկություններին մեր բանակը պարտական է նրանով, վոր նա գիտե, թե ուր է գնում,— նրանով, վոր նա կազմված է վո՛չ թե անաղե զինվորներից, այլ գիտակից մարդկանցից, վորոնք հասկանում են, թե ուր պետք է գնալ և հանուն ինչի մարտնչել:

Իսկ այն բանակը, վոր հասկանում է, թե ինքը հանուն ինչի յե մարտնչում, անհաղթելի յե, ընկերնե՛ր:

Ահա թե ինչու մե՛ր Կարմիր բանակն աշխարհում ամենալավ բանակը լինելու բոլոր հիմքերն ունի:

Կեցցե՛ մեր Կարմիր Բանակը:

Կեցցե՛ն նրա մարտիկները:

Կեցցե՛ն նրա ղեկավարները:



**Կեցցե՛ պրոլետարիատի դիկտատուրան, վոր Կարմիր Բանակ է ծնել, նրան հաղթանակ է տվել և նրան փառքով է պսակել:**

**(ԲՈՒՌՆ, ՅԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):**

(Հրապարակված է «Պրավդա»-յում 1928 թվականի փետրվարի 28-ին):

# ԲԱՆՎՈՐԱ-ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՅԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ 22-ՐԴ ՏԱՐԻՆ

Լրացավ Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի 22-րդ տարին:

Նա ծնունդ առավ և ամրապնդվեց քաղաքացիական պատերազմների թեժ բոցերի մեջ սպիտակգվարդիական և իմպերիալիստական յերկրների միացյալ ուժերի դեմ մղած փառապանծ մարտերում՝ վորպես պրոլետարիատի դիկտատուրայի բանակ, վորպես սոցիալիզմի համար պայքարող ժողովրդի զինված ավանգարդ:

Կարմիր Բանակի ստեղծումը, նրա հաղթանակները քաղաքացիական պատերազմի ճակատներում, նրա վերածվելը անխորտակելի ուժի—այս բոլորը սերտորեն կապված



են աշխատավոր մարդկության հանճարեղ ուսուցիչների— Լենինի-Ստալինի անուններին հետ:

Յերկար տարիների ընթացքում կոմունիզմի առաջնորդներ Լենինը և Ստալինը կազմակերպում եյին բանվոր դասակարգի զինված ջոկատները, նրան նախապատրաստում եյին մեծ փոթորիկների համար, կապիտալիստական կարգերը զինված ապստամբության միջոցով տապալելու համար: Դեռ 1905 թվին Լենինը Ռուսաստանում և Ստալինն Անդրկովկասում բանվորներին կոչ եյին անում ստեղծել զինված ջոկատներ:

Իր առաջին «Նամակներ հեռվից» հոդվածաշարքում Վլադիմիր Իլյիչն առանձնապես ընդգծում եր, վոր.

> «...Ցարիզմը մինչև վերջը ջախջախելու և ազատության միակ յերաշխիքը պրոլետարիատի զինումն ե» (Հատ. 20 եջ՝ 18):

Ընկեր Ստալինը փետրվարյան հեղափոխությունից անմիջապես հետո Տուրուխանյան աքսորից վերադառնալով և անցնելով պրոլետարական հեղափոխության նախապատրաստմանը, առաջ ե քաշում բանվոր դասակարգի զինված ուժերը կազմակերպելու հարցը:

«Եթե ճիշտ է այն դրույթը,— գըրում է ընկ. Ստալինը,— որ հեղափոխությունը չի կարող հաղթել առանց նրան ծառայելու համար մինչև ատամները զինված ուժի, ապա մեր հեղափոխությունը ևս չի կարող յոլա գնալ առանց հեղափոխության շահերի հետ հարազատորեն կապված իր սեփական բանվորական գվարդիայի:

Բանվորների անհապաղ զինում, բանվորական գվարդիա— այս է հեղափոխության հաղթանակի յերկրորդ պայմանը» (Ստալին, «Հոկտեմբերի ուղիներում» հրատ. 1925 թ. եջ՝ 8):

Ֆաբրիկաներում և գործարաններում կազմակերպվեցին Կարմիր Գվարդիայի ջոկատներ: Կարմիր Գվարդիան բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ պատմական խոշոր դեր խաղաց պրոլետարիատի դիկտատուրայի համար մղած մարտերում:

Լենինը և Ստալինը, բոլշևիկյան կուսակցությունը, պարզ տեսնում եյին, որ շահագործողների տապալված դասակարգերը չեն հաշտվի իրենց պարտության հետ և դաշնակցած մյուս յերկրների շահագործողների հետ կդիմեն պայքարի ամենակատաղի, ամենածայրահեղ միջոցներին, վորպեսզի



վոչնչացնեն պրոլետարիական դիկտատուրան, վորպեսզի մեր յերկրում վերականգնեն կապիտալիստների ու կալվածատերերի արյունոտ տիրապետությունը:

Անհրաժեշտ եր պաշտպանել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության նվաճումները, ապահովել բանվորների և գյուղացիների իշխանությունը և վերացնել շահագործողների անիծյալ տիրապետության վերականգնման ամեն մի հնարավորություն:

Խորհրդային յերկրի վրա սև ամպեր եյին կուտակվում. ցարական գեներալները, մինչև ատամները սպառազինված իմպերիալիստների ակտիվ օժանդակությամբ ու մասնակցությամբ, պատրաստվում եյին ծվեն-ծվեն անելու խորհրդային Ռուսաստանը: Հին, ցարական բանակը քայքայվում եր, նա դարձել եր անմարտունակ, իսկ Կարմիր Գվարդիան իր կազմակերպական կառուցվածքով, ի վիճակի չեր դիմադրել լավ վարժեցված հակահեղափոխական կանոնավոր բանակներին: Անհրաժեշտ եր ստեղծել միասնական ղեկավարությամբ, յերկաթյա կարգապահությամբ, ռազմականապես բա-

վականաչափ վարժեցված նոր բանակ, բանվորների և գյուղացիների հեղափոխական բանակ— Կարմիր բանակ:

Հրապարակվեց Կարմիր բանակի ստեղծման մասին լենինյան դեկրետը, որտեղ ասված էր.

«Հին բանակը ծառայում էր որպես բուրժուազիայի կողմից աշխատավորների դասակարգային ճնշման զենք: Իշխանությունն աշխատավորներին ու շահագործվող մասսաներին անցնելուց հետո առաջ յեկավ նոր բանակի ստեղծման անհրաժեշտությունը, բանակ, որը հանդիսանում է Խորհրդային իշխանության նեցուկը»:

Կարմիր բանակը ծնունդ առավ և կազմակերպվեց դաժան փորձությունների ու շարունակ թեժացող քաղաքացիական մարտերում: Նա առաջացավ ու հասակ առավ հեղափոխության անսահմանորեն նվիրված բանվորների, Կարմիր գվարդիականների, զինվորների ու նավաստիների ռազմական ջոկատներից, նա աճեց ու հզորացավ խորհրդային ժողովրդի ջերմ սիրո, ակտիվ օգնության ու աջակցության մթնոլորտում:

Բոլշևիկների կուսակցությունը ստեղծեց հզոր Կարմիր բանակ: Նա հանդիսացավ



խորհրդային իշխանության տիտանական ուժը, որին զարնվելով ջարդ ու փշուր յեղան մեր ներքին ու արտաքին թշնամիները:

Այդ մասին Կարմիր բանակի մեծ ստեղծող կոմունիզմի անմահ ուսուցիչ Վ. Ի. Լենինը գրել է՝

«Առանց Սոցիալիստական հանրապետության զինված պաշտպանության, մենք գոյություն ունենալ չեյինք կարող: Տիրապետող դասակարգը յերբեք իր իշխանությունը չի հանձնի ճնշված դասակարգին: Բայց վերջինս պետք է գործնականում ապացուցի, որ ինքը ոչ միայն ընդունակ է տապալելու շահագործողներին, այլև կազմակերպվելու ինքնապաշտպանության համար, խաղաթղթի վրա դնելու ամեն ինչ...

Պրոլետարիատը, յեթե միայն նա ուզում է տիրապետել և պետք է տիրապետի, պետք է ապացուցի այդ նաև իր ռազմական կազմակերպությամբ»... (Լենին, յերկեր, հատոր 24-րդ, եջ՝ 121—122):

Խորհրդային իշխանությունը փառահեղ ձևով կենսագործեց իր մեծ առաջնորդի ցուցմունքը և բանվոր դասակարգն իր Կարմիր բանակի ու Բանվոր-Գյուղացիական Նավա-

տորմի սանձծումով ապացուցեց, վոր նա ընդունակ է վոչ միայն վերցնելու իշխանությունը, այլև ամեն վիթխարի ուժ, անսպառ յեռանդ ու ընդունակություն՝ պահպանելու իր հարազատ իշխանությունը, ամրապնդելու իր նվաճումները՝ բոլոր կարգի թշնամիների վոտնձգություններից:

Բոլշևիկների կուսակցությունը կազմակերպեց Կարմիր բանակ, հաստատեց այնտեղ հեղափոխական ամուր կարգապահություն, նա ջարդ ու փշուր արեց հեղափոխության սև դավաճանների՝ տրոցկիստների ու բուխարինականների դիմադրությունը, վորոնք պայքարում եյին կանոնավոր Կարմիր բանակ կազմակերպելու դեմ, նրա հեղափոխական կարգապահության ամրապնդման դեմ և խորհրդային իշխանությունը տապալելու համար աշխատում եյին նրան զրկել իր հզոր պաշտպանից՝ Կարմիր բանակից:

Իրենց դավաճանական, հրեշավոր նպատակներին հասնելու համար— Խորհրդային իշխանությունը տապալելու համար, Բրեստում տեղի ունեցող հաշտության բանակցությունների չրջանում տրոցկիստներն ու բուխարինականները հրահրում եյին



իմպերիալիստների հարձակումը Խորհրդային Ռուսաստանի վրա: Բոլշևիկյան կուսակցությունը, Լենինի և Ստալինի ղեկավարությամբ մերկացնելով ու ջախջախելով բոլոր դասակարգի թշնամիներին, ստեղծեց հեղափոխական բանակ, հմտորեն ոգտագործեց զինվորական ազնիվ մասնագետներին, հաստատեց ամուր կարգապահություն, հիմնադրեց քաղաքական կոմիսարների ինստիտուտ, շինարարական ու կազմակերպական վիթխարի աշխատանքով ամրապնդեց Կարմիր բանակը:

Իր գոյության առաջին իսկ որերին Կարմիր բանակը կռվի բռնվելով ոտարերկրյա իմպերիալիստական բանակների հետ, ուժեղ հակահարված հասցրեց նրանց: Ոտարերկրյա ոկուպանտներն ոգտագործելով հուդա Տրոցկու և նրա բուխարինյան գործակիցների դավաճանությունը, 1918 թ. փետրվարին մեծ բանակներով ներխուժեց յերիտասարդ, դեռ չամրապնդված խորհրդային հանրապետության սահմանները:

Նրանք մեր յերկրի վրա հարձակման անցան բոլոր սահմանագծերում՝ Բալթիկ ծովից սկսած մինչև Սև ծովը: Նրանք նպատակ եյին դրել տապալել պրոլետարիատի դիկտատուրան և մեր հայրենիքը

պարծենալ իրենց պատիվը: Հին, ցարական քայքայված բանակը չէր կարող դիմադրել այդ զինված հորդաներին, նա նահանջում էր: Թուրքական ինտերվենցիան վոչնչացնելու համար Խորհրդային երկրում բարձրացավ հեղափոխական հուժկու շարժում, կուսակցությունն ու կառավարությունը մարտական կոչ արձակեցին՝ «Սոցիալիստական հայրենիքը վտանգի մեջ է»:

Բանվոր դասակարգը, ամբողջ ժողովուրդը արձագանքեց այդ կոչին, նոր կազմակերպված Կարմիր բանակի զորամասերը, ժողովրդի ակտիվ օգնությամբ հերոսաբար հետ շպրտեց մինչև ատամները զինված թշնամուն: Նարվայի և Պսկովի տակ թշնամին ստացավ վճռական հարված, խափանվեցին նրանց նպատակները, կասեցվեց նրանց առաջխաղացումը հեղափոխական Պետրոգրադի վրա: Խորհրդային զորքերի այդ հաղթանակն օրը դարձավ յերիտասարդ Կարմիր բանակի հոբելյանի օր:

Կարմիր բանակն աճում ու կոփվում է Կալեդինի, Կրասնովի, Կոռնիլովի սպիտակ գվարդիական բանակների դեմ մղվող մարտերում:

Սոցիալիստական հեղափոխությունից ու Խորհրդային իշխանության հաջողությու-



ներից սարսափահար համաշխարհային բուրժուազիան կազմակերպեց Ռուսաստանի ներսի հակահեղափոխական ուժերը, զինեց նրանց և իր բանակները շպրտեց խորհրդային հանրապետությունը տապալելու համար: Սկսվեց միջազգային իմպերիալիզմի ռազմական ինտերվենցիան խորհուրդների երկրի դեմ: Նրանք գրավեցին Մուրմանսկը, ճապոնական ռազմամոլները զորք հանեցին Վլադիվոստոկ, նախապատրաստեցին չեխոսլովակյան կորպուսի խռովությունը, մեր երկիրն ուղարկեցին լրտեսներ, դիվերսանտներ, տեռորիստներ, նստեցնելով նրանց ինչպես ռազմաճակատներում, շտաբներում, այնպես էլ թիկունքում: Խորհրդային իշխանության շուրջը սկսեց սեղմել թշնամական օղակը:

Բոլշևիկյան կուսակցությունը և Խորհրդային իշխանությունն աշխատավորներին զենքի կոչեցին, հեղափոխությունը Կարմիր բանակի վրա դժվարագույն խնդիր դրեց— Խորհրդային Ռուսաստանը պաշտպանել օտարերկրյա հափշտակիչների ու ներքին հակահեղափոխության միացյալ ուժերից, պաշտպանել մեր հայրենիքի տերիտորիալ ամբողջությունն ու անկա-

ությունը, պաշտպանել Հոկտեմբերյան
Սոցիալիստական Մեծ հեղափոխության
վաճումները:

Լենինը և Ստալինը ստեղծում և ամրա-
պնդում էին հանրապետության զինված
ուժերը, անմիջականորեն կազմակերպում
յին Կարմիր բանակի հաղթանակները քա-
ղաքացիական պատերազմի բոլոր ճակատ-
ներում: Վլադիմիր Իլյիչն անձամբ ստու-
գում և հաստատում էր մարտական գոր-
ծողությունների պլանները: Նրա ամենա-
մերձավոր ոգնական ու մշտական խորհըր-
դատուն էր ընկեր Ստալինը: Ընկեր Ստա-
լինն անողոքաբար մերկացնում էր Հուդա-
Տրոցկու և նրա կամակատարների դավա-
ճանական ռազմական պլանները:

«Քաղաքացիական պատերազմի յե-
րեք տարվա ընթացքում ընկեր Ստա-
լինը հարկադրված էր յերկար ժամա-
նակով աշխատել զանազան մարտական
ճակատներում: Չկար համարյա թե
վոչ մի մարտական տեղամաս, վորտեղ
յեղած կամ աշխատած չլիներ ընկեր
Ստալինը: Իսկ այնտեղ, վորտեղ ռազ-
մական դրությունը դառնում էր ծա-
նըր, ճգնաժամային, նա, իբրև կա-
նոն, յերևում էր անպայմանորեն:



Լենինը հիանալի գիտեր, վոր միայն
Ստալինն է ի վիճակի հաղթահարելու
այն խնդիրները, վորոնք ծագում էին
ռազմաճակատում վտանգի կապակցու-
թյամբ, իսկ յերբեմն էլ սպառնացող
աղետի կապակցությամբ: Յեվ Լենինը
դրանում վոչ մի անգամ չսխալվեց»
(ՎՈՐՈՇԻԼՈՎ):

1918 թվի կեսերին իմպերիալիզմի սպի-
տակ գվարդիական վարձկանները մեծ
գրոհ են սկսում Դոնից և ձգտում են Խոր-
հըրդային Հանրապետությունը կտրել պա-
րենային ռեսուրսներից և միացնել հարա-
վային ու արևելյան հակահեղափոխու-
թյանը, այն հաշվով, վոր ընդհանուր ճա-
կատ կազմած հարձակվեն Մոսկվայի վրա:
Սովը, հակահեղափոխական ուժերն օղա-
կում են մեր յերկիրը: Կուսակցության
կենտկոմը, Լենինը ընկ. Ստալինին ուղար-
կում է Ցարիցին պրոլետարական կենտ-
րոնների և Կարմիր բանակայինների մա-
տակարարումը կազմակերպելու համար:
ընկեր Ստալինն իր մեջ մարմնացնելով
պրոլետարական մեծ ստրատեգի և տակ-
տիկի փայլուն հատկությունները, գերա-
զանց կերպով է կատարում լենինյան առա-
ջադրանքները:

Սակայն իմպերիալիստները շարունակում էին սնուցել ինտերվենցիայի սև ողակը: Անգլիական իմպերիալիստների զորքերը Հյուսիսում՝ Արխանգելսկի մոտ, ֆրանսիական ինտերվենտները Հարավում՝ Օդեսայի շրջանում, ճապոնական հափշտակիչների բանակները Հեռավոր Արևելքում, սիբիրյան հակահեղափոխությունը և չեխոսլովակյան զորքերը հարձակվում էին երիտասարդ Խորհրդային Հանրապետության վրա:

Այդ ահեղ օրերին բոլշևիկյան կուսակցությունն ու խորհրդային կառավարությունը վճռական միջոցներ ձեռք առան Կարմիր բանակն ուժեղացնելու համար:

> «Մենք վորոշել էինք,— գրում է Լենինը,— մինչև գարուն ունենալ մեկ միլիոն հոգուց բաղկացած բանակ. մեզ այժմ հարկավոր է 3 միլիոն հոգուց բաղկացած բանակ: Մենք կարո՛ղ ենք այդ ունենալ: Եվ մենք այդ կունենա՛նք» (Լենին, երկեր, հատոր 23, էջ 217):

Խորհրդային կառավարությունը 1918 թ. նոյեմբերի 20-ին ստեղծեց պաշտպանության խորհուրդ՝ Լենինի գլխավորությամբ, վորը վիթխարի աշխատանք ծա-



վալեց երկիրը պաշտպանելու, թշնամուն վերջնականապես վոչնչացնելու ուղղությամբ: 1918 թ. դեկտեմբերի 5-ին Կարմիր բանակում ստեղծվեցին քաղբաժիններ, վորոնք հսկայական դեր խաղացին Կարմիր բանակը բոլշևիկյան կուսակցության լոզունգների շուրջ համախմբելու՝ քաղաքականապես ցեմենտելու գործում:

1918 թվի վերջին կատաստրոֆիկ դրություն է ստեղծվում Արևելյան ճակատում, մանավանդ 3-րդ բանակի տեղամասում, վորն ստիպված լեղավ թշնամուն հանձնել Պերմը:

Կուսակցությունն այստեղ է ուղարկում դարձյալ ընկեր Ստալինին: Ընկեր Ստալինը ձեռք է առնում մի շարք վճռական միջոցառումներ, վորոնց «...հետևանքով վոչ միայն կասեցվեց հակառակորդի հետագա առաջխաղացումը, այլև 1919 թվի հունվարին Արևելյան ճակատն անցավ հարձակման և մեր աջ թևում մենք գրավեցինք Ուրալսկը» (Վորոշիլով):

1919 թվի գարնանը սկսվեց Անտանտայի առաջին արշավանքը Խորհրդային երկրի դեմ:

> «Այդ արշավանքը,— գրել է ընկեր Ստալինը,— կոմբինացված էր, վո-

րովհետև նա ենթադրում էր Կոլչակի, Դենիկինի, Լեհաստանի, Յուդենիչի և Թուրքեստանում ու Արխանգելսկում եղած Անգլո-ռուսական խառը ջոկատների համատեղ հարձակումը, ըստ որում արշավանքի ծանրության կենտրոնը գտնվում էր՝ Կոլչակի շրջանում» (Ի. Ստալին.— Հոդվածներ և ճառեր Ուկրաինայի մասին, Կուս. հրատ. 1936 թ. էջ 90):

1919 թվի մարտին Կոլչակը ճեղքեց Կարմիր զորքերի գիծը, իր համար ճանապարհ բաց անելով դեպի Վոլգա, Դենիկինի հետ միանալու նպատակով: Դենիկինը հարձակվում էր հարավից, Կոլչակի հետ միանալու նպատակով:

Լենինի և Ստալինի ղեկավարությամբ բոլոր ուժերը պայքարի նետվեցին Կոլչակի դեմ. Կոլչակին վոչնչացնելու համար ճակատ ուղարկվեցին բոլշևիկյան կուսակցության լավագույն ուժերը, մոբիլիզացիայի ենթարկվեցին կոմյերիտականներն ու բանվորները:

Կարմիր բանակի հետ միասին Կոլչակի դեմ հերոսաբար կռվում էր Վոլգայի նավատորմը, վորը համալրվում էր Պետրո-



գրադից Վոլգա փոխադրված ականակիրներով:

Կարմիր բանակը հերոսական մարտերում ջախջախեց Կոլչակի սպիտակգվարդիական բանդաները:

> «1919 թվի գարնանը գեներալ Յուդենիչի սպիտակգվարդիական բանակը, կատարելով Կոլչակի առաջադրված խնդիրները, այն է՝ «Տիրապետել Պետրոգրադին» և Արևելյան ճակատից դեպի իրեն գրավել հեղափոխական զորքերին, սպիտակ էստոնացիների, սպիտակ ֆիննների ու անգլիական նավատորմի օգնությամբ անսպասելի հարձակման անցավ և Պետրոգրադի համար ստեղծվեց ռեալ սպառնալիք: Դրության լրջությունը խորանում էր նաև նրանով, վոր հենց Պետրոգրադում հայտնաբերվել էյին հակահեղափոխական դավադրություններ, ...» (Վորոշիլով):

Յուդենիչի՝ Պետրոգրադի վրա կատարած հարձակման հետ զուգընթացաբար Բուլակ-Բալախովիչը ձեռք բերավ մի շարք հաջողություններ Պսկովի ուղղությամբ:

Այդ ժամանակ Կարմիր բանակի թիկունքում, Պետրոգրադի շրջանում սպիտակգվ-

վարդխականներն ու բնաերվենտները խառ-
վություն կազմակերպեցին «Կրասնայա
Գորկա» և «Սերայա Լոշադ» ամրոցներում:
Ճակատը ցնցվեց և թշնամին սկսեց առաջ
շարժվել Պետրոգրադի վրա: Պետրոգրադի
վրա կախվեց ահեղ վտանգ:

Վլադիմիր Իլյիչը Պետրոգրադ է ուղար-
կում ընկեր Ստալինին: Կուսակցությունը
նրան է հանձնարարում Պետրոգրադի
պաշտպանության կազմակերպումը: Ընկեր
Ստալինը բոլշևիկյան կարգ ու կանոն է
հաստատում սասանված ճակատում, լիկ-
վիդացիայի յե յենթարկում դավաճանու-
թյունը, շտաբները մաքրում է լրտեսնե-
րից ու մատնիչներից, Պիտերի հերոսական
պրոլետարիատին վոտքի յե բարձրացնում
քաղաքը պաշտպանելու համար:

Ցամաքից Կարմիր բանակի, իսկ ծովից՝
Կարմիր Նավատորմի նավերի կոմբինաց-
ված հարվածով թշնամին հետ շպրտվեց և
Պետրոգրադի մատույցներն ապահովվեցին:
Կարմիր Նավաստիները կռվում եյին հերո-
սաբար: Նրանք հետ մղելով անգլիական
նավերի գրոհները, խորտակեցին թշնամու
սուզանավը:

Ընկ. Ստալինի ղեկավարությամբ Կար-



միր բանակի և Կարմիր Նավատորմի հերո-
սական պայքարով ջախջախվեց Անտանտի
առաջին արշավանքը:

Բայց թշնամին նոր հարձակում է սկը-
սում:

1919 թվի աշունն է: Հասնում եր քաղա-
քացիական պատերազմի վճռական, բեկ-
ման մոմենտը: Այդ Անտանտի յերկրորդ
արշավանքն եր:

«Այդ արշավանքը նույնպես,— գրում
է ընկեր Ստալինը,— կոմբինացված
եր, վորովհետև նա յենթադրում եր
Դենիկինի, Լեհաստանի, Յուդենիչի
համատեղ հարձակում (Կոլչակը հաշ-
վից հանված եր): Արշավանքի ծանրու-
թյան կենտրոնը այս անգամ գտնվում
եր Հարավում Դենիկինի շրջանում»
(Ստալին— Հոդվածներ և ճառեր Ուկ-
րաինայի մասին: Կուս. հրատ. 1936
թ. եջ 91):

Սպիտակգվարդիական Դենիկինն իր ո-
տարերկրյա իմպերիալիստական տերերի
կողմից մատակարարված լինելով դրամով
ու ռազմական հանդերձանքով՝ գրավեց
Դոնբասը, Կուրսկը, Որյոլը և սպառնում
եր Տուլային, անմիջական վտանգ եր կախ-
ված Մոսկվայի գլխին: Դեռ յերբեք թըշ-

նամին այդպես մոտիկ չէր յեղել Խորհրդային մայրաքաղաքին: Այդ ահեղ մոմենտին լսվեց Լենինի մարտական կոչը.

«Խորհրդային հանրապետությունը պաշարված է թշնամու կողմից:

Նա պետք է լինի միասնական ռազմական ճամբար վոչ թե խոսքով այլ գործնականում»:

Լենինի կոչը ջերմ արձագանք գտավ աշխատավոր մասսաների սրտերում. ամբողջ յերկիրը բարձրացավ վոտքի՝ իր Կարմիր բանակին ոգնելու համար. խորհրդային բանակները համալրվեցին 20.000 կոմունիստներով, 10.000 կոմյերիտականներով, 36.000 բանվորներով՝ ուղարկված պրոֆմիությունների կողմից: Թիկունքում և ճակատում հայտարարվեց կուսակցական շաբաթ, ամբողջ ժողովուրդն ել ավելի սերտորեն համախմբվեց խորհրդային իշխանության շուրջը:

Միաժամանակ դավաճան Տրոցկու կողմից քայքայման հասցված ֆրոնտը կարգի բերելու համար, Կենտկոմն ընկեր Ստալինին ուղարկում է Հարավային ճակատ: Ընկեր Ստալինը նախքան իր նշանակումը Կենտկոմի առաջ դրեց յերեք պայման.



1. Տրոցկին չպետք է միջամտի Հարավային ճակատի գործերին.

2. Հարավային ճակատից պետք է անմիջապես հետ կանչվեն մի շարք աշխատողներ, վորոնց ընկեր Ստալինն անպետք եր համարում զորքերի մեջ դրությունը վերականգնելու համար.

3. Հարավային ճակատը պետք է անհապաղ գործուղվեն նոր աշխատողներ, Ստալինի ընտրությամբ, վորոնք կկարողանային կատարել այդ խնդիրները: Այդ պայմաններն ընդունվեցին լրիվին:

Ընկեր Ստալինը վիթխարի յեռանդով ու վճռականությամբ անցավ գործի: Ծանոթանալով Հարավային ճակատում ստեղծված դրության հետ, կտրականապես մերժեց հրամանատարության կողմից մշակված հարձակման պլանը, և պրոլետարիատի հանճարեղ ստրատեգին հատուկ վարպետությամբ, մշակեց հարձակման նոր պլան: Հին պլանի համաձայն Կարմիր բանակը պետք է հարձակվեր Ցարիցին-Նովոռոսիյսկ ուղղությամբ՝ Դոնի ճանապարհազուրկ տափաստաններով, թշնամական միջավայրով: Այդ հարձակումը կարող եր կործանարար լինել Կարմիր բանակի համար: Ընկեր Ստալինի մշակած պլա-

նի համաձայն, գլխավոր հարվածը պետք է լիներ Ցարիցին–Ռոստով ուղղությամբ՝ Դոնեցի ավազանի վրայով: Ստալինյան պլանի առավելությունն այն էր, որ.

ա) հարձակումը տեղի յեր ունենալու բանվորական միջավայրով, որը հեշտացնում էր Կարմիր բանակի առաջխաղացումը.

բ) Դենիկինը կզրկվեր իրեն սնող Վորոնեժ– Ռոստով յերկաթուղագծից և այդ գիծը կստանար Կարմիր բանակը.

գ) Այդ առաջխաղացումով Դենիկինի բանակը կբաժանվեր յերկու մասի, որից կամավորական մասի հետ հաշիվը կվերջացներ Մախնոն, իսկ կազակային զորամասերը կդրվեին նրանց թիկունքն անցնելու սպառնալիքի տակ:

դ) Հնարավորություն ենք ստանում կազակներին կռվեցնելու Դենիկինի հետ, որովհետև վերջինս, մեր հաջողության դեպքում, կաշխատի կազակներին իրենց ստանիցաներից շարժել դեպի արևմուտք, որի հետ կազակների մեծ մասը չի համաձայնվի.

յե) Մենք ստանում ենք Դոնեցի ավազանի քարածուխը, իսկ Դենիկինը զրկվում է դրանից:



Կենտրոնական Կոմիտեն ընդունեց ընկեր Ստալինի պլանը: Լենինն անձամբ հրաման գրեց դաշտային շտաբին՝ անմիջապես փոխել հարձակման հին պլանը:

Արդյունքը յեղավ այն, որ Դենիկինի բանակները ջախջախվեցին և նահանջեցին Հյուսիսային Կովկաս, որտեղ նրանց մնացորդները վերջնականապես լիկվիդացիայի յենթարկվեցին Կարմիր բանակի կողմից:

1920 թվի հունվարին Կարմիր զորքերը ջախջախեցին սպիտակներին ու Անգլիացիներին Անդրկովկասում: Նրանք ոգնեցին Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի աշխատավորներին ազատագրվելու մուսաֆաթների, դաշնակների ու մենշևիկների անիծյալ տիրապետությունից:

Յուդենիչը նոր փորձ կատարեց հարձակվելու Պետրոգրադի վրա, բայց վերջնականապես ջախջախվեց Կարմիր զորքերի ուժգին հարվածներից և միայն նրա խղճուկ մնացորդները թաքնվեցին Եստոնիայի տերիտորիայում:

1920-թվին Կարմիր զորքերը լիկվիդացիայի յենթարկելով Հյուսիսային ճակատը, ազատագրեցին Մուրմանսկը և Արխանգելսկն անգլիական օկուպացիայից:

Ընկեր Ստալինի առաջարկությամբ ու ղեկավարությամբ Հարավային ճակատում ծնվեց ու կազմակերպվեց առաջին հեծյալ բանակը, որն առասպելական սխրագործություններ կատարեց հակահեղափոխության դեմ մղած պայքարում։

Սակայն օտարերկրյա իմպերիալիստները մեր երկրի դեմ նետեցին նոր ուժեր, Լեհական պաների բանակը։ Այդ Անտանտի 3-րդ արշավանքն էր։

1920 թ. գարնանն էր։ Պիլսուդսկին հսկայական բանակով ներխուժեց Ուկրաինա։ Նրանք փորձել էին հափշտակել Ուկրաինան և Բելոռուսիան։ Կարմիր բանակի զորամասերը ջախջախելով Պիլսուդսկու զորքերին հաղթական արշավով մտան Լեհաստանի խորքերը, մոտեցան Վարշավայի ու Լվովի պատերին։

Ամբողջ աշխարհը լարված ուշադրությամբ հետևում էր Կարմիր բանակի գումարտակների հուժկու գրոհին — պրոլետարները և բոլոր աշխատավորները՝ ցնծությամբ ու սիրով, իսկ իմպերիալիստները՝ սարսափով ու ատելությամբ։

Օտարերկրյա իմպերիալիստները շտապեցին փրկելու ջախջախված Լեհաստանը։ Լեհական բանակներին առատորեն մատա-



կարարեցին ռազմամթերք, ռազմական հանդերձանք ու սպայական կազմ։ Բայց Լեհաստանն ամբողջապես տանուլ տվեց։ Նա տագնապով սպասում էր Կարմիր բանակի հարվածին։ Վերջիվերջո պանական Լեհաստանն ստիպված եղավ հաշտություն խնդրել։ Խոսելով այդ մասին Վ. Ի. Լենինը գրում է.

«Մենք դաժանորեն հուսախաբ արինք կլեմանսոններին մեր թուլության վերաբերմամբ և ապացուցեցինք, որ Լեհաստանը մեզ հաղթել չի կարող, իսկ մենք հեռու չենք Լեհաստանի նկատմամբ հաղթանակ տանելուց, և հեռու չեյինք և չենք» (Լենին — Երկ. հատ. 25, էջ՝ 377)։

Այսպիսով լիկվիդացիայի ենթարկվեց Անտանտայի 3-րդ արշավանքը։ Այժմ պետք էր ջախջախել Վրանգելին, որն ինտերվենտների օգնությամբ հսկայական բանակ էր ստեղծել և օգտվելով սպիտակ լեհական կամպանիայից, փորձում էր թիկունքից հարվածել մեզ։ Այդ առթիվ Կենտկոմը հետևյալ որոշումն է ընդունում (1920 թ. օգոստոսի 3-ին).

«Վրանգելի հաջողության և Կուբանում աճող տագնապալի հետևանքով

ընդունել, որ Վրանգելի ճակատն ունի համազգային միանգամայն ինքնուրույն նշանակություն, և առանձնացնել այն, որպես ինքնուրույն ճակատ։ Համաձայնարարել ընկեր Ստալինին կազմակերպել Հեղափոխական Ռազմական Խորհուրդ իր ուժերն ամբողջովին կենտրոնացնել Վրանգելի ճակատում...»։

Նույն օրը Լենինը գրում է Ստալինին.
«Հենց նոր Քաղբյուրոյում կատարեցինք ճակատների բաժանում, որպեսզի դուք բացառապես զբաղվեք Վրանգելով...»։

Սակայն լեհերից հետո Կարմիր զորքերը կործանիչ հարված հասցրին Վրանգելի բանակին և նրան նետեցին ծովը։

«Լենինի արտահայտությամբ, պանական Լեհաստանը և Վրանգելը միջազգային իմպերիալիզմի երկու ձեռքերն էին» (Համ. Կ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց, էջ 325)։

Այսպես, առանձնապես Պերեկոպի համար մղվող մարտերում Կարմիր բանակն իրեն անմահ փառքով պսակեց։

Անդրկովկասյան երկրի գլխավոր թշնամիները, ինտերվենցիայի հիմնական ուժերը, 1920 թ. վերջին արդեն ջախջախված էին։



Բայց այդ դեռ չէր նշանակում, որ ինտերվենցիան բոլորովին դադարեց։ Հեռավոր արևելքում ճապոնական ինտերվենցիան շարունակվեց ընդհուպ մինչև 1922 թ.։ Ճապոնական հափշտակիչները Հեռավոր արևելքում ափ էին հանել 100 հազարանոց բանակ և զինել էին ատաման Սեմյոնովի ու ատաման Կալմիկովի բանդաները։ Ճապոնացիների հրոսակներն ավերում էին խաղաղ գյուղերը, հազարավոր բանվորներ ու գյուղացիներ, պարտիզաններ, անասելի տանջանքների ենթարկելով, նրանց գնդակահարում էին, խեղդում ծովախորշերում, այրում շոգեքարշերի հնոցներում։ Հրդեհներով, կախաղաններով, ավերակներով ու անթիվ դիակներով ծածկվեց ճապոնական ինտերվենտների ուղին։ Բայց Հեռավոր Արևելքը գրավել նրանց չհաջողվեց։ Բոլշևիկները ինտերվենտների դեմ ոտքի հանեցին ամբողջ երկրամասը։ Պարտիզանները քանդում էին երկաթուղիները, հրկիզում կամուրջները, գրավում զենք փոխադրող գնացքները։ Թեև վատ զինված, բայց նրանք հերոսաբար կռվում էին և պաշտպանում իրենց հայրենիքը ճապոնական հափշտակիչներից։

Վոգեվորված Կարմիր բանակի օրինակով, Հեռավոր արևելյան հանրապետության ժողովրդական Հեղափոխական Բանակն իր վրա վերցրեց պայքարը ճապոնական հափշտակիչների ու սպիտակգվարդիականների դեմ:

Ժողովրդական բանակի մարտիկները Վոլոչայեվկայի և Սպասսկի տակ ջախջախեցին սպիտակգվարդիական և ճապոնական բանակները: Ջախջախված ճապոնացիները շտապ հեռացան յերկրամասից:

1922 թ. հոկտեմբերի 25-ին Կարմիր զորամասերը գրավեցին Վլադիվոստոկը:

«Ծովն են նետված սպիտակգվարդիականների վերջին ուժերը,— ասում էր Լենինը Վլադիվոստոկը գրավելուց հետո:—Յես կարծում եմ, մեր Կարմիր բանակը յերկար ժամանակով մեզ ապահովեց Ռուսաստանի վրա, կամ թե ուղղակի կամ անուղղակի, սերտորեն կամ շատ թե քիչ հեռավոր կերպով մեզ հետ կապված հանրապետություններից վորևէ մեկի վրա՝ սպիտակ գվարդիականների գրոհի վորևէ հնարավոր կրկնությունից»:

(Լենին— Յերկեր, հատ. 27 էջ 317):

Ինտերվենտների վերջին մնացորդները



դուրս շպրտվեցին մեր հայրենիքի սահմաններից: Մինսկից մինչև Վլադիվոստոկ, Մուրմանսկից մինչև Յերևան մեր ամբողջ հայրենի հողի վրա, վորը վողողված էր նրա լավագույն զավակների արյունով, ընդմիշտ ամրապնդվեց սոցիալիզմի դրոշը, Լենինի-Ստալինի անպարտելի դրոշը: Ավարտվեց քաղաքացիական կռիվը, վորի հերոսական պայքարն սկզբից մինչև վերջ ընթացել է Լենինի և Ստալինի ղեկավարությամբ:

«1918—1920 թ. թ. ժամանակաշրջանում ընկեր Ստալինը թերևս այն միակ մարդն էր, վորին Կենտրոնական Կոմիտեն նետում էր մի մարտական ճակատից մյուսը, ընտրելով ամենից վտանգավոր, հեղափոխության համար ամենից ահավոր տեղերը» (Վորոշիլով):

Կարմիր բանակը մեր յերկրի ժողովրդի համար, սոցիալիզմի կառուցման գործի իրականացման համար ստեղծեց ու ապահովեց խաղաղ պայմաններ:

Խորհրդային ժողովուրդը հպարտության զգացմունքով է վերհիշում իր ծոցից ծնված Կարմիր բանակի փառահեղ անցյալը: Կարմիր բանակն այդ վիթխարի հաղթա-

նակները ձեռք է բերել ժողովրդի գործին իր անսահման նվիրվածությամբ, բոլշևիկների կուսակցության գործին իր հավատարմությամբ:

Կարմիր բանակը և Ռազմա-Ծովային նավատորմը Սպիտակ գվարդիականներին և ինտերվենտների բանակները ջախջախեց այն պատճառով, վորովհետև ԽՍՀՄ-ի ժողովուրդները և Կարմիր բանակը միասնական էին թշնամուն վոչնչացնելու ձգտման մեջ: «Մենք հաղթանակ տարանք,— գրում է Լենինը,— վորովհետև մենք միասնական էինք և կարող էինք լինել միասնական» (Երկեր հատ. 25, էջ 49):

Կարմիր բանակը ուներ և ունի այնպիսի ամուր թիկունք, վորպիսին չի կարող ունենալ կապիտալիստական յերկրների վոչ մի բանակ, նա հենվում էր և հենվում է բանվորների և գյուղացիների հեղափոխական դաշինքի վրա. այդ դաշինքը Կարմիր բանակի ուժի և հաղթանակների կարեվորագույն աղբյուրն է: Կարմիր բանակը հաղթանակեց, վորովհետև նա ազատություն բերեց մեր հայրենիքի ազգությունների աշխատավորներին, վորովհետև նա վայելում էր և վայելում է բոլոր ազգու-



թյունների աշխատավորների ամբողջ համակրանքը:

«Եթե չլիներ այդ համակրանքը,— գրում է ընկեր Ստալինը,— մենք չէինք կարողանա այդ գեներալներից վոչ մեկին դուրս քշել»:

Կարմիր բանակի հաղթանակները ձեռք բերվեցին միջազգային պրոլետարիատի ակտիվ ոգնության շնորհիվ:

«Հենց, վոր միջազգային բուրժուազիան,— գրում է Լենինը,— ուզում է ձեռք թափահարել մեզ վրա, նրա ձեռքը բռնում են նրա սեփական բանվորները»:

Վերջապես քաղաքացիական պատերազմում Կարմիր բանակի հաղթանակների գլխավոր և հիմնական պայմանն այդ բոլշևիկյան կուսակցության իմաստուն ղեկավարությունն է:

«...Մեր հաղթանակների կազմակերպիչի բարձր պատիվը,— գրում է ընկեր Ստալինը,— պատկանում է մեր... յերկրի առաջավոր բանվորների մեծ կոլեկտիվին— Ռուսաստանի Կոմունիստական Կուսակցությանը»:

300.000 կոմունիստներ՝ կուսակցության այն ժամանակվա ամբողջ կազմի 65%-ը կռվում էին ճակատներում. բոլշևիկները

կռվում էին Կարմիր բանակի առաջին շարքերում՝ իրենց հետեվից տանելով բոլոր մարտիկներին, նրանց ցույց տալով կարգապահություն, դժվարությունները հաղթահարելու հմտության օրինակներ: Բոլշեվիկների կուսակցության յերկաթյա կարգապահությունը, նրա անձնազոհությունը և նվիրվածությունը պրոլետարական գործին, Լենինյան-Ստալինյան տակտիկան և ստրատեգիան, անհաշտ պայքարը դավաճան տրոցկիստների բուխարինականների դեմ, հավատարմությունը բոլշեվիկյան մեծ դրոշին,— համախմբեցին Կարմիր բանակի շարքերը և նրան անպարտելի դարձրին:

Կարմիր բանակի հաղթանակներում հսկայական դեր է պատկանում զինվորական ստալինյան կոմիսարների անձնուրաց, հերոսական աշխատանքին և բանակում քաղաքական աշխատանքը կազմակերպելուն:

Զինվորական կոմիսարները կուսակցության պատվիրակներն էին բանակում: Քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում նրանք կուսակցության և կառավարության սրատես աչքն էին յեղել, վորը հսկում էր Կարմիր բանակում հրամանատարական պոստերում նշանակված



ռազմական մասնագետներին: Կոմիսարները Կարմիր բանակի կուսակցական քաղաքական աշխատանքի լավագույն կազմակերպիչներն էին, նրանք մոբիլիզացիայի յեն յենթարկում մարտիկներին՝ մարտական խնդիրների կատարման համար, հեղափոխության թշնամիներին ջախջախման համար: Հանդիսանալով անբասիր հեղափոխական- բոլշեվիկներ, նրանք զինված բանվորներին ու գյուղացիներին միացնում էին հզոր Կարմիր բանակի մեջ: Զինվորական կոմիսարները մյուս քաղ. աշխատողների հետ միասին՝ կարգի են բերում Կարմիր բանակի թիկունքը, Խորհրդային իշխանությունն էին կազմակերպում այնտեղ և հաստատում էին հեղափոխական կարգ, վորն ապահովում էր մեր զորքերի արագ և հաջող առաջխաղացումը: Նրանք քաղաքական մեծ աշխատանք էին տանում հակառակորդի զորքերի մեջ քայքայում ու կազմալուծում նրա թիկունքը: Ընկեր Ստալինի ձեռքով գրած այդ ժամանակվա գնդի կոմիսարի համար հրահանգի մեջ ասված է՝

«Գնդի կոմիսարը հանդիսանում է իր գնդի քաղաքական- բարոյական ղեկավարը— նրա նյութական և հոգեվոր

չահերի առաջին պաշտպանը: Ցեթե գնդի հրամանատարը հանդիսանում է գնդի ղեկավարը, ապա կոմիսարը պետք է լինի իր գնդի հայրը և հոգին»:

Այդպես էյին քաղաքացիական պատերազմի զինվորական կոմիսարները, վորոնք մեծագույն սեր և հարգանք էյին վայելում միլիոնավոր Կարմիր բանակայինների և հրամանատարների կողմից: Նրանք քաջության, ազնվության, և հեղափոխական կարգապահության որինակ էյին ցույց տալիս:

Ընկեր Ստալինը քաղաքացիական պատերազմի անմոռանալի հրաշունչ տարիներին յեղել է խնտերվենտների, սպիտակ գվարդիականների ջախջախման ստրատեգիական հանճարեղ պլանների նախաձեռնողը, հեղինակը, բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու առաջնորդը: Ընկեր Ստալինը արդեն այն ժամանակ դնում եր առաջավոր սոցիալիստական ռազմական գիտության հիմքերը, գիտություն, վորը չեր կառչում մեռած, հնացած ֆորմուլաներից և ստրատեգիայի ու տակտիկայի նորմաներից:



Ընկեր Ստալինը բոլոր կոմիսարներին ցույց եր տալիս մարտական քաղաքական աշխատանքի չգերազանցված որինակներ, վորը մասսաների մեջ հավատ եր ներշնչում դեպի հաղթանակը, կայտառություն և ուժեր ներարկում մարդկանց մեջ: Նա զինվորական կոմիսարների դերը, բարձրացրեց մինչև Կարմիր բանակի ռազմա-քաղաքական ղեկավարների մակարդակին, Լենինյան-Ստալինյան քաղաքական գործիչների մակարդակին:

Նա անմահ Լենինի հետ միասին աճեցնում ու դաստիարակում եր Կարմիր բանակի մարտիկներին, հրամանատարներին կոմիսարներին ու քաղաքական գծով բոլոր աշխատողներին:

Բոլշևիկյան կուսակցության լավագույն զավակների՝ զինվորական կոմիսարների և բոլոր քաղաշխատողների մարտական գործունեությունը դարձնեց Կարմիր բանակի հզորությունը, ապահովեց նրա հաղթանակը հակահեղափոխության դեմ մղած պայքարի բոլոր ճակատներում:

> «Առանց զինկոմի մենք չեյինք ունենա Կարմիր բանակ» (Լենին):

Ստալինի դաստիարակած քաղաշխատողները քաջության ու արիության չգերա-

ղանցված օրինակներ էին ցույց տալիս քաղաքացիական կռիվներում: Քաջության ու արիության բազմաթիվ օրինակներ նրանք ցույց տվին նաև Խասան լճի, Մոնղոլա-Մանջուրական սահմանի մոտ, Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ժողովուրդների ազատագրման համար մղված պայքարում, ինչպես նաև Ֆիննական ժողովրդին մաններհայմյան բանդաներից ազատագրելու համար մղած հերոսական մարտերում:

Կարմիր բանակը խորհրդային երկրի աշխատավորների համար ապահովեց խաղաղ աշխատանքի, տնտեսությունը վերականգնելու, սոցիալիստական հասարակություն կառուցելու ապահով պայմաններ: Սակայն Լենինը բոլշևիկների կուսակցությանը և բոլոր աշխատավորներին նախազգուշացնում էր.

«Մենք ապրում ենք ոչ միայն պետության մեջ, այլև պետությունների սիստեմում և Խորհրդային Հանրապետության երկարատև գոյությունն իմպերիալիստական պետությունների կողքին աներևակայելի է: Վերջ ի վերջո կհաղթանակի կամ մեկը կամ մյուսը. իսկ մինչև այդ վերջը, խորհրդային հանրապետության և բուրժուական պետությունների միջև մի շարք ամենազարհուրելի ընդհարումներ անխուսափելի են: Այդ նշանակում է, որ տիրապետող դասակարգը՝ պրոլետարիատը, եթե միայն նա ուզում է տիրապետել և տիրապետելու է, պետք է այդ ապացուցի նաև իր ռազմական կազմակերպությամբ» (Լենին, երկերի ժողովածու հատ. 24 էջ՝ 122):

Հետևելով Լենինի ցուցումներին կուսակցությունն ընկեր Ստալինի գլխավորությամբ լուրջ աշխատանք սկսեց Կարմիր բանակի մարտունակության հետագա բարձրացման, կազմակերպական և տեխնիկական ամրապնդման ուղղությամբ: Նա վերակառուցվեց, նրա կազմակերպումը հասցվեց ժամանակակից պահանջների մակարդակին: Սահմանվեց Կարմիր բանակի կոմպլեկտավորման սիստեմը, մոբիլիզացիայի սիստեմը, ծավալվեց ռազմական ուսուցման հաստատությունների ցանցը, մշակվեցին կանոնադրություններ և հրահանգներ:

Մեր երկրի ինդուստրացման անշեղ իրականացման, ստալինյան հնգամյակների

պլանների գերակատարման հետեվանքով Խորհրդային Միությունը հետամնաց և անուժ յերկրից դարձավ աշխարհի ամենահզոր ինդուստրիալ յերկիր, մեքենայացված սոցիալիստական գյուղատնտեսության յերկիր: Աճեց ու ամրապնդվեց, կատարելագործվեց Կարմիր բանակը, նա ստացավ անհրաժեշտ քանակությամբ նոր տեխնիկա, զենքի ամենաժամանակակից բոլոր տեսակները, իր կադրերով, իր տեխնիկայով նա հանդիսանում է նոր, աշխարհի ամենահզոր բանակը:

«Մենք հաստատապես համոզված ենք,— ասում է ընկեր Վորոշիլովը,— վոր յեթե հարկավոր լինի այդ ամբողջ տեխնիկան բազմապատկել այն հիանալի կադրերով, վոր մենք ունենք Կարմիր բանակի շարքերում, մեր բոլշևիկյան Բանվորա-Գյուղացիական հրամանատարական կազմով, մեր հրաշալի մարտիկներով, մեր պանծալի հետևակազորայիններով, հեծելազորայիններով, հրետանավորներով, տանկիստներով, ինժեներներով, օդաչուներով, ծովայիններով, սոցիալիզմը կառուցել ցանկացող մեծ յերկրի պրոլետարիատի և կոլտնտեսականների ամբողջ հզորության ու բոլշևիկյան համառության,— ապա կըս-



տացվի այնպիսի մի ուժ, վորի դեմ չի կարող կանգնել վոչ մի ինտերվենցիա»:

Խորհրդային բանակը վիթխարի անպարտելի ուժ է ինչպես ցամաքում ու ծովում, այնպես էլ ոդում:

Բոլշևիկյան կուսակցության ու սոցիալիստական մեր պետության հոգատարությամբ մենք ունենք աշխարհահռչակ ավիացիա, վորը նվաճել է անդերազանց փառք, սահմանել է միջազգային ամենաբարձր ռեկորդները: Այժմ մենք ունենք մեր սոցիալիստական մեծ պետության արժանի ուժեղ Ռազմա-Ծովային նավատորմ, նա աճում ու հզորանում է շարունակ, վորովհետև «Մենք պետք է հաշվի առնենք այն, վոր մեր յերկիրը մեծ է, վոր նա հսկայական տարածության վրա շրջապատված է ծովերով և այդ մեզ միշտ հիշեցնում է այն մասին, վոր մեզնում նավատորմը պետք է լինի ամրակուռ, ուժեղ» (ՄՈԼՈՏՈՎ):

Խորհրդային կառավարությունն ամեն տարի ե՛լ ավելի յե ամրապնդում Կարմիր բանակը և Ռազմածովային նավատորմը, բարձրացնում է ռազմատեխնիկական հզորությունը: Խոսելով այդ մասին ԽՍՀՄ-ի

Գերագույն Խորհրդի 4-րդ արտակարգ սեսիայում ընկեր Վորոշիլովը հրապարակեց հետևյալ թվերը:

1930 թվի համեմատությամբ 9 տարվա ընթացքում մեր տանկերի թիվը աճել է 43 անգամ, ինքնաթիռների աճը՝ 656%, այսինքն 6,5 անգամ ավելի, ծանր, միջին ու թեթև հրետանին 692%, կամ համարյա 7 անգամ ավելի, փոքր կալիբրանոց հակատանկային ու տանկային հրետանի այժմ մենք ունենք 70 անգամ ավելի: Ձեռքի և հաստոցավոր գնդացիրների աճը 539%, կամ համարյա՝ 5,5 անգամ ավելի, չնայած նրան, վոր մարտիկների թվական կազմը աճել է 3,5 անգամ, մենք ունենք 1934 թ. յուրաքանչյուր մարտիկին ընկնող 7,74 մեխանիկական ձիու ուժի փոխարեն՝ 13 լրիվ ձիու ուժ, իսկ ռազմածովային նավատորմի տոննաժը աճել է 130%-ով:

Կարմիր բանակում և ռազմածովային նավատորմում ծառայելու խորհրդային կառավարության նոր օրենքը, վորն ընդունվեց ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի 4-րդ արտակարգ սեսիայում, վիթխարի չափով ավելացրեց մեր յերկրի պաշտպանական հզորությունը: Ի տարբերություն աշ-



խարհի մյուս բանակներից, կապիտալիստական պետությունների բանակներից, Կարմիր բանակը խորհրդային վողջ ժողովրդի հետ մեկտեղ ապրում է յերկրի քաղաքական ակտիվ կյանքով, նա մասնակցեց ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի և Խորհրդային իշխանության մյուս օրգանների ընտրություններին: Կուսակցական, կոմյերիտական և Խորհրդային իշխանության բոլոր կարևորագույն ձեռնարկումներին Կարմիր բանակի և Ռազմա-Ծովային նավատորմի մարտիկները և բոլոր աշխատողները ցույց են տալիս ակտիվ մասնակցություն: Քաղաքական աշխատանքի ամբողջ սիստեմը բանակում, Կարմիր բանակին դարձրել են խորհրդային ժողովրդի քաղաքական դպրոց, սոցիալիստական հասարակության գիտակից կառուցողների դաստիարակության դպրոց, կոմունիզմի դպրոց:

Կարմիր բանակում նրա մարտիկները, հրամանատարներն ու քաղաշխատողները մեծ ջանասիրությամբ զինվում են բոլոր գիտությունների մեջ ամենաառաջավոր գիտությամբ՝ Մարքսիզմ — Լենինիզմով, ընդլայնում են իրենց քաղաքական մտահորիզոնը, ձեռք են բերում բարձր կուլտու-

րա և դառնում են բազմակողմանիորեն զարգացած հասարակական ակտիվ գործիչներ:

Կարմիր բանակում լայն կերպով տարածվել է կուլտուրական լուսավորչական հիմնարկների՝ դպրոցների, դասընթացների, գրադարանների, ակումբների, կինոների, Կարմիր բանակի տների ընդարձակ ու հարուստ ցանցը, վորոնց միջոցով Կարմիր բանակայիններին և հրամկազմին լայն կերպով հաղորդակից են դարձնում Խորհրդային ծաղկող գիտության ու արվեստի նվաճումներին, դաստիարակում ու աճեցնում են անհամար տաղանդներ:

Կարմիր բանակն ամեն տարի մեր չքնաղ հայրենիքի վոսկե ֆոնդը— կադրերի բանակն ավելացնում է հարյուր հազարավոր կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկներով գիտակից ու ակտիվ հասարակական աշխատողներով, վորակյալ մասնագետ տրակտորիստներով, կոմբայնավարներով, մասսաների կազմակերպիչներով, վորոնք հրաշալի կերպով տիրապետում են ռազմական բարձր տեխնիկային, վորոնք անձնուրաց հայրենասերներ են, վորոնք մեր հայրենիքի հետագա բարորության համար, նրա պաշտպանության ամ-



րապնդման համար պատրաստ են ամեն րոպե թափելու իրենց արյունը՝ կաթիլ առ կաթիլ:

Կարմիր բանակային ինքնագործ խմբակները, նրանց օլիմպիադաները համատարած հրճվանք ու վոգևորություն են առաջ բերում: Այստեղ վիթխարի ծավալ է ստացել սոցիալիստական մրցումը, ստախանովյան ստեղծագործ շարժումը՝ կառավարության առաջադրանքներն անձնվիրաբար կատարելու համար: Հայրենիքի պաշտպանության գործում հանդես են բերում արիություն ու խիզախություն: Հազարավոր մարտիկներ, հրամանատարներ և քաղաշխատողներ արժանացել են ժողովրդի ցընծության, ԽՍՀՄ-ի կառավարության բարձր պարգևների, նրանց կուրծքը զարդարված է Խորհրդային Միության շքանշաններով: Կարմիր բանակի շարքերից դուրս են յեկել աշխարհահռչակ հերոսներ, կուսակցական և անկուսակցական բոլշևիկ կադրեր: Վիթխարի յե Կարմիր բանակի շինարարական աշխատանքը՝ Չելյուսկինյան հռչակավոր արշավանքի ժամանակ Արկտիկան նվաճելու գործում, մեր յերկրի սոցիալիստական վերելքի բոլոր ճյուղերում անխտիր: Նրա հրաշագործու-

թյունները մտել են ՍՍՀՄ-ի ազգությունների և ժողովրդական ստեղծագործության մեջ, նրա փառքն են գովերգում ամենուր։ Ահա թուրքմենական մի երգ 10-րդ Կարմիր բանակի հերոսական հաղթանակի մասին, որը անխզելիորեն կապված է անմահ Լենինի հետ միասին Կարմիր բանակի ստեղծող ու կազմակերպիչ մեծ Ստալինի անվան հետ.

«Ընկեր Ստալինը յեկավ շտապ,
Յեվ մղեց գործերին առաջ,
10-րդի մարտիկները դարձան
Քարի պես ամուր անհաղթ»։

Կարմիր բանակն իր հայրենիքի նկատմամբ, իր ժողովրդի ու միջազգային աշխատավոր մարդկության նկատմամբ իր պարտքը կատարում է փառքով ու պատվով, նա իր անունը անթառամ փառքով պսակեց ոչ միայն քաղաքացիական կռիվների տարիներին այլ և նրանից հետո յեկող իր գոյության հետագա վողջ տարիների ընթացքում, նա անօրինակ հերոսություն ու խիզախություն ցույց տվեց սոցիալիստական յերկրի ժողովուրդների խաղաղ ստեղծագործ աշխատանքն ու կյանքը պաշտպանելու համար, ջարդելով



ծասան լճի, Ծալխին Գոլի մոտ սանձարձակ թշնամիներին։ Նա ապատարար կռիվ մղելով լեհական գիշատիչ պաների դեմ, ազատագրեց մեր Արևմտյան ուկրաինացի և Արևմտյան բելոռուս յեղբայրներին։ Արդարացի այդ մեծ կռվում է՛լ ավելի բարձրացավ Կարմիր բանակի միջազգային փառքը, այն տարածվեց ամբողջ աշխարհով մեկ՝ հուրախություն բոլոր աշխատավորների, ի սարսափ աշխատավորների բոլոր թշնամիների։ Իսկ այսօր յեղբայրական ազատարար ձեռք է մեկնել ֆինական աշխատավոր ժողովրդին և հեռու չէ այն որը, յերբ Կարմիր բանակի օգնությամբ ֆիննական աշխատավոր ժողովուրդն ընդմիշտ կազատվի սպիտակ ֆինների՝ իմպերիալիստական վարձկանների կեղեքումից ու ճնշումից։

***

Սոցիալիզմի յերկրի բազմամիլոն յերջանիկ ժողովուրդը ցնծությամբ է դիմավորում իր պանծալի Կարմիր բանակի Բանվոր-Գյուղացիական, ... 

աշխատավորների հարազատ բանակն է, նրա հուսալի հենարանն ու պաշտպանն է, նրա միսն ու արյունը:

«Կուսակցությունը հպարտանում է,— ասում է ընկեր Ստալինը,— որ իրեն հաջողվեց բանվորների ու գյուղացիների օգնությամբ ստեղծել աշխարհում առաջին Կարմիր բանակը, որը մեծագույն մարտերում պաշտպանել ու պաշտպանում է բանվորների ու գյուղացիների ազատությունը:

Կուսակցությունը հպարտանում է, որ Կարմիր բանակին հաջողվեց պատվով անցնել մեր երկրի բանվոր դասակարգի և գյուղացիության ներքին ու արտաքին թշնամիների դեմ մղած դաժանագույն մարտերի ծանր ուղին, որ նրան հաջողվեց ձևավորվել որպես մեծագույն մարտական հեղափոխական ուժ՝ ի սարսափ բանվոր դասակարգի թշնամիների, հուրախություն բոլոր ճնշվածների ու ստրկացվածների»:

Անսահման է Խորհրդային ժողովրդի սերը դեպի հարազատ Կարմիր բանակը. այդ սերը Կարմիր բանակը ձեռք է բերել դաժան մարտերում իր չտեսնված հերոսությամբ, Լենին-Ստալինի գործին իր



անձնազոհ նվիրվածությամբ: Նրա վիթխարի հզորությունը, նրա հերոսությունները հրճվալից հույսեր են ներշնչում ամբողջ աշխարհի ճնշվածների ու շահագործվողների սրտերում, նրա անխորտակելի ռազմական ուժն ահեղությունն ու սարսափ է առաջացնում աշխատավոր մարդկության բոլոր թշնամիների մեջ:

Ինչպես որ ամբողջ երկիրը, Կարմիր բանակը ու Ռազմածովային Նավատորմը իրենց զարգացման բոլոր էտապներում, թշնամու դեմ մղված պայքարի բոլոր հարցերի լուծման ժամանակ միշտ իրենց առջևում ունեցել են Լենին-Ստալինի մեծ կուսակցությունը և իմաստուն առաջնորդներ Լենինին և Ստալինին: Կոմունիզմի մեծ առաջնորդներ Լենինի և Ստալինի անունները փայփայվում են ամբողջ աշխարհի բանվորների և ճնշվածների սրտերում: Մեր մոտ այժմ սովորություն է դարձել, որ աշխատանքի արտադրողականության նոր ռեկորդներ սահմանող ստախանովականները, Արկտիկան յուրացնող բևեռախույզները, ի փառս Խորհրդային հայրենիքի հերոսական սխրագործություններ կատարող օդաչուները, համաշխարհային գյուտեր անող գիտնականնե-

րը,— նրանք բոլորն այդ ամենը կատարում են հանուն Ստալինի և Ստալինի անունով:

Կարմիր բանակայինները մարտի ժամանակ գրոհի յեն նետվում «հանուն Ստալինի» լոզունգով, բազմամիլիոն մեր ժողովուրդը Ստալինի անունը շուրթերին կոմունիստական հասարակություն է կառուցում մեզ մոտ:

«Ստալին— ահա այն անունը,— գրել է մեր ժամանակի մեծ ողաչու Վալերիյ Պավլովիչ Չկալովը,— վոր թեվավորում է Խորհրդային միլլիոնավոր մարդկանց, տանելով դեպի սխրագործություններ, դեպի հերոսության ու խիզախության հրաշքներ:

Ստալին— նրա անվան հետ է կապված մեր յերկրում յեղած ամբողջ հիանալին: Նա մեր բոլոր հաղթանակների ստեղծողն է: Նրան են ուղղված մեր ամբողջ ժողովրդի հայացքները, նրան են ուղղված ամբողջ աշխարհի լավագույն մարդկանց հայացքները: Նրա անունը շուրթերին և սրտում, նրա իմաստուն ղեկավարությամբ, մեր յերկրի մարդիկ ստեղծում են սոցիալիզմի մեծ գործը:



Չկան այնպիսի դժվարություններ, վոր մենք չկարողանանք նրանց հաղթահարել: Չկան այնպիսի ռեկորդներ, վոր մենք չկարողանայինք նվաճել»:

Այդ բոլորը այդպես է կատարվում, վորովհետև՝ «առաջ, հանուն Ստալինի» լոզունգը նշանակում է առաջ հանուն ժողովուրդների յերջանկության, հանուն ամբողջ աշխատավոր և պրոգրեսիվ մարդկության լավագույն և ազնիվ իղձերի— կոմունիզմի, առաջ, հանուն Լենինի գործի:

Խորհրդային միության մեջ կառուցվել է Սոցիալիստական հասարակություն, վորտեղ ընդմիշտ վերջ է տրված մարդու շահագործումն ու ճնշումը մարդու կողմից, մեր յերկիրը դարձել է ամենահզոր ինդուստրիալ յերկիրը, կոլեկտիվացված առաջավոր գյուղատնտեսության յերկիր, ծաղկող կուլտուրայի ու գիտության յերկիր: Յերջանիկ ու բախտավոր, խաղաղ կյանք ու ստեղծագործ աշխատանք է ծավալվում լայնատարած մեր յերկրում. այդ ամենն արդյունք են Լենինի-Ստալինի փառապանծ կուսակցության հանճարեղ քաղաքականության, Կարմիր բանակի ան-

խորտակելի հզորության, բոլշևիկյան կուսակցության, խորհրդային պետության ճիշտ քաղաքականության: Այդ իմաստով քաղաքականությամբ մեր յերկիրը դարձել է Սոցիալիզմի հզոր ամրոցը, իսկ այդ գրանիտե բաղալի վրա բարձրանում է Կոմունիզմի վիթխարի շենքը: Սակայն Սոցիալիզմի այդ մեծ հաղթարշավի առաջ կծկվող կապիտալիստական աշխարհը ճգնում է քանդել Սոցիալիզմի յերկիրը: Հետևելով իր մեծ առաջնորդի սիրելի Ստալինի ցուցմունքին կապիտալիստական շրջապատման մասին, կուսակցությունը ուժեղ կերպով աշխատում է վորպեսզի ել ավելի բարձրացնի առայժմ միակ Սոցիալիստական պետության հզորությունը և կազմակերպվածությունը:

Կապիտալիստական շրջապատում արդեն բորբոքվող իմպերիալիստական պատերազմը, իմպերիալիստական բանակում՝ Սոցիալիզմի յերկրի դեմ արշավանք սկսելու կոչերը—Անգլո—Ֆրանսիական և պատերազմի այլ հրձիգների պրովակացիաները ԽՍՀՄ-ի դեմ պատերազմ հրահրելու մասին, ստիպում են մեզ հաստատակամորեն ու համառորեն ամրապնդել խորհրդային



յին հայրենիքի պաշտպանությունը, վորպեսզի մեր յուրաքանչյուր գործարան, յուրաքանչյուր կոլտնտեսություն լինի մեր տնտեսության, կուլտուրայի և պետական պաշտպանության ել ավելի հզորագույն ամրոց: «Պետք է ըստ—ամենայնի ուժեղացնել և ամրապնդել մեր Կարմիր բանակը, Կարմիր Նավատորմը, Կարմիր ավիացիան, Պաշը-Ավիաքիմը: Պետք է մեր ժողովրդին ռազմական հարձակման վտանգի հանդեպ պահել մոբիլիզացիոն պատրաստության վիճակում, վորպեսզի վոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների վոչ մի ֆոկուս չկարողանա մեզ հանկարծակի բերել...» (ՍՏԱԼԻՆ):

Կոմունիստական կուսակցությունը և Խորհրդային կառավարությունը հոգում են վորպեսզի ապահովեն Սոցիալիզմի յերկրի աշխատավորների խաղաղ կյանքը և խաղաղ աշխատանքի պայմանները, նրանք ռազմական ընդհարումներ չեն փնտռել և չեն ել փնտռի յերբևիցե. ԽՍՀՄ-ի ժողովուրդներին խորապես խորթ է ռազմական ավանտյուրիզմի վոգին: Մենք չենք ձգտում գրավել ուրիշի հողերը, մեր դիվանագիտությունը բազմիցս յերկաթյա կարողության և ցուցաբերել [illegible]

ծարծակ պրովակացիաների մոմենտին: Խորհրդային կառավարությունը և բոլշևիկյան կուսակցությունը անշեղորեն կիրառում են խաղաղության քաղաքականությունը, ըստ ամենայնի ոժանդակելով միջազգային այն պայմանագրերին, վորոնք ծառայում են խաղաղության ամրապնդման գործին, վորոնք ուղղված են իմպերիալիստական պատերազմի դեմ: Սոցիալիզմի յերկիրը միշտ էլ վարել է բոլոր ժողովուրդների հետ բարեկամության հաստատելու ազնիվ քաղաքականությունը՝ հանդես գալով պատերազմի հրձիգների դեմ: Խորհրդային - գերմանական պայմանագիրը բարեկամության և սահմանագծերի մասին, այնուհետև՝ Խորհրդային-եստոնական, լատվիական ու լիտվական փոխադարձ ոգնության պայմանագրերը, ինչպես նաև այլ յերկրների հետ կնքված պայմանագրերը, Խորհրդային Միության խաղաղության քաղաքականության լավագույն ապացույցն է: Խորհրդային Միության այդ խաղաղասիրական քաղաքականության կարևորագույն հենարանը Կարմիր բանակի և ռազմածովային նավատորմի



հզորությունն է, նրա ուժը հանդիսանում է ահարկու մի նախազգուշացում ռազմական ավանտյուրաների սիրահարներին, պատերազմի պրովակատորներին, վորոնք տարվում են Խորհրդային միության վրա հարձակվելու պլաններով: Լինելով խաղաղության պաշտպան, ամեն կերպ խուսափելով պատերազմից, մեր Կարմիր բանակը և Ռազմա-ծովային նավատորմը պատրաստ են հանդիպելու թշնամուն, պատրաստ են պատերազմի համար: Ամեն մի րոպե, հենց վոր հանդուգն թշնամին փորձի խախտել մեր սրբազան յերկրի սահմանների անձեռնմխելիությունը, նա իր վրա կզգա մեր զինված, հզոր ուժերի, մեր ամբողջ ժողովրդի ջախջախիչ հարվածի վիթխարի ուժը:

> «Մեր բանակը, հարձակման համար չէ, վոր գոյություն ունի, բայց միայն մինչև թշնամին մեր հայրենիքի վրա հարձակվելու մոմենտը: Նա կլինի ամենահարձակվողը՝ յերբևիցե հարձակված բոլոր բանակներից, յեթե թշնամին նրան ստիպի այդ բանին»:
>
> (ՎՈՐՈՇԻԼՈՎ):

Կարմիր բանակի և Ռազմածովային նավատորմի մարտիկների, քաղաշխատողների

ու հրամ․ կազմի մեջ, ամբողջ խորհրդային ժողովրդի մեջ վառվում է հայրենասիրության անշեջ հուրը: Այդ ավելի քան արտահայտվեց զինվորական այն յերդման մեջ, վոր նրանք տվեցին մեր յերկրին ու ժողովրդին: Այդ յերդումն հուզմունքով ընդունեցին բոլոր կարմիր բանակայինները, հրամանատարները, և քաղաշխատողները: Նրանք յերդվեցին հանուն հայրենիքի, հանուն մեր ժողովուրդների յերջանկության, հանուն սիրելի ՍՏԱԼԻՆԻ՝ ազնվությամբ կատարել իրենց պարտքը:

Կարմիր բանակի ենթուղխազմը, հաղթանակի նկատմամբ նրա ունեցած անընկճելի կամքը բազմապատկվում են նրա շարքերի ամենաառաջավոր տեխնիկայի զինվածությամբ: Թիկունքը և ճակատը մեր յերկրում միմյանց հետ զուգակցված են անխորտակելի միասնությամբ: Ահա թե ինչու պատերազմի այն բոլոր հրձիգները, վորոնք յերազում են ինտերվենցիայի մասին, մեր յերկրի վրա հարձակվելու մասին, Խորհրդային ժողովուրդը համոզված իր տիտանական ուժի մեջ հանգիստ, սակայն ահեղ կերպով նախազգուշացնում է նրանց․ «Ապա մի փորձեցեք ներս խցկվել»:

«Յեվ այժմ, յերբ ամբողջ աշխարհը



զանվում է նախապատերազմական տենդի վիճակում, Կարմիր բանակը, Ռազմածովային նավատորմը հպարտ այն գիտակցությամբ, վոր միշտ ու անպայմանորեն Խորհրդային Միության զինված ուժերի հետ են, մեր ամբողջ հիանալի ժողովուրդն ու կառավարությունը, Լենին-Ստալինի կուսակցությունը և մեր իմաստուն առաջնորդ Ստալինը հանգիստ և ուժեղ կերպով աշխատում և փորփորում ամեն մի վայրկյան լինեն մարտական լիակատար պատրաստության մեջ: Խորհրդային Միությանը չեն կարող հանկարծակի բերել միջազգային խառնաշփոթությունները, վորքան էլ դրանք լինեն անակընկալ ու ահեղ: Իսկ այն պարոնայք վորոնց պղտոր բանականությունը նրանց խանգարում է Խորհրդային Միությունը տեսնել այնպես, ինչպես նա կա իրականում, միշտ կստանան ատրկաբակյան դասեր այնքան ժամանակ, մինչև նրանք հասկանան, վոր խորհուրդների մեծ ժողովուրդն ունի՝ և միշտ կունենա՝ իր մեծ, ու թշնամու դեմ մղվող պայքարում սարսափելի զինված ուժը, վորը կխորտակի

բոլորին ու ամեն ժամանակ, ով վոր համարձակվի ձեռք բարձրացնել հաղթական Խորհրդային Միության սրբազան իրավունքների, հողի ու պատվի վրա» (ՎՈՐՈՇԻԼՈՎ)։

Խորհրդային միության զինված ուժերի մեծ զորավար ընկ. ՎՈՐՈՇԻԼՈՎԻ այս խոսքերն այժմ մեր ամբողջ ժողովրդի, ամբողջ բանակի միահամուռ ցանկությունն ու պողպատյա կամքն է։

Խորհրդային հզոր ու յերջանիկ ժողովուրդը հրճվանքից ու պարծանքով է դիմավորում իր հարազատ Բանվորա-Գյուղացիական Կարմիր բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 22-րդ տարեդարձը՝ Լենին-Ստալինի կուսակցության առաջնորդությամբ, իր քաջարի զինված ուժերի պաշտպանությամբ, անհաղթելի ընթացքով առաջ է գնում դեպի կոմունիզմի վերջնական հաղթանակ։



# Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ

## ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՅԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ 22-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ

Վ. Ի. ԼԵՆԻՆ — «Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը» Լենին «Ընտիր յերկեր» յերկհ. 1-ի հ. եջ՝ 1082

Ի. ՍՏԱԼԻՆ — «Ռուսական հեղափոխության հաղթանակի պայմանների մասին» Լենին-Ստալին յերկհատորյակի 1-ին հ. եջ՝ 790—792

Ի. ՍՏԱԼԻՆ — «Ընկեր Իվանովի նամակը և ընկեր Ստալինի պատասխանը» առանձին բրոշյուր, 1938 թ.

Ի. ՍՏԱԼԻՆ — «Հաշվետու զեկուցումը կուսակցության 18-րդ համագումարում ՀամԿ(բ)Կ ԿԿ աշխատանքների մասին»

Ի. ՍՏԱԼԻՆ — «Ընկեր Ստալինի ճառը Կրեմլում Կարմիր Բանակի ակա-

դեմիականների ավարտման առթիվ» մայիսի 4-ին 1935 թ.

ՀԱՄԿ(բ)Կ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ համառոտ դասընթացի 8-րդ գլուխ.

Կ. ՑԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— «Ստալինն ու Կարմիր Բանակը» առանձին բրոշյուր, 1938 թ.

Կ. ՑԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Ճառ, ՀամԿ(բ)Կ 18-րդ համագումարում, առանձին բրոշյուր 1939 թ.

Կ. ՑԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Ստալինը և Կարմիր Բանակի շինարարությունը (ընկ. Ստալինի ծննդյան 60-ամյակի առթիվ) «Խ. Հ.» № 296, 23/XII 1939 թ.

Կ. ՑԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Ընդհանուր զինվորական պարտականության օրենքի նախագծի մասին զեկ. ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի վոչ հերթական 4-րդ սեսիայում 1939 թ. օգոստոսի 31-ին (առանձին բրոշյուր, 1939 թ.

Կ. ՑԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— «Ճառ, բանվորական-գյուղացիական և Կարմիր բանակային պատգամավորների Մոսկվայի խորհրդի հանդիսավոր նիստում» մասնակցությամբ հասա-



րակական կազմակերպությունների, զինվորական մասերի, նվիրված բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 20-ամյակին: («Կուսաշխատող» № 2, 1938 թ. կամ «Խ. Հ.» № 45 24/II 1938 թ.)

«ԽՍՀՄ-ի Ժողկոմխորհի նախագահ ընկեր Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ճառը, ռադիոյով 1939 թ. 17 սեպտեմբերի («Խ. Հ.» № 218, 1939 թ. սեպտ. 18-ին):

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— «Հոկտեմբերյան հեղափոխության 22-րդ տարեդարձի առթիվ» (ընկ. Մոլոտովի զեկուցումը Մոսկվայի խորհրդի հանդիսավոր նիստում: 1939 թ. նոյեմբերի 6-ին. «Խ. Հ.» № 261 1939 թ. նոյեմբերի 10-ին):

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— «Չհարձակվելու Խորհրդային գերմանական պայմանագրի մասին» (հաղորդում ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի 1939 թ. օգոստոսի 31-ի նիստում):

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— «Խորհրդային Միության արտաքին քաղաքականության մասին» (զեկուցում ԽՍՀՄ

Գերագույն Խորհրդի արտահերթ 5-րդ սեսիայում, 1939 թ. հոկտեմբերի 31-ին):

ՍՏԱԼԻՆՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԻՑ.— 120—122 հոդվածները:

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ.— Կարմիր բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի յերդման տեքստի մասին («Կուս-աշխատող» № 2, 1939 թ. փետրվարի):

ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ.— Խորհրդային ժողովրդի բանակը (տես «Բոլշևիկ» № 3, 1939 թ. փետրվար, եջ 7—14):

ՑԵ. ՇՉԱԴԵՆԿՈ.— «Սոցիալիստական հասարակարգի բանակը» (տես «Բոլշևիկ» № 3, 1939 թ. փետրվար, եջ 14—28):

ԻՆՉՊԵՍ էյինք մենք ջարդում ճապոնական սամուրայներին (Պետհրատ Յերևան 1939 թ.):

Ի. ԵԿՍԼԵՐ.— Խասանի հերոսները: Պետհրատ Յերևան 1939 թ.



## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԻ

Անցած 1939 թիվը, ստալինյան յերրորդ հնգամյակի յերկրորդ տարին, նշանավոր տարի յեղավ, վորը հավերժացավ տնտեսության, կուլտուրայի, տեխնիկայի, գիտության, արվեստի բոլոր բնագավառներում սոցիալիզմի ձեռք բերած մի ամբողջ շարք հիանալի նվաճումներով: Հսկայական չափով աճեց խորհրդային պետության տնտեսական և պաշտպանական հզորությունը, ավելացավ նրա միջազգային կշիռը: Խորհրդային ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը դարձավ այնպիսի ուժ, վորպիսին պատմությունը դեռևս չի տեսել:

# ՀԱՄԿ(Բ)Կ 18-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

1939 թվի մարտի 10-ին Մոսկվայում, Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության մայրաքաղաքում, բացվեց Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության 18-րդ համագումարը: Համագումարի աշխատանքի որերը վերածվեցին ամբողջ խորհրդային ժողովրդի մեծագույն տոնի:

Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության 18-րդ համագումարը լսեց ընկեր Ստալինի՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի աշխատանքի մասին, համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող զեկուցումը: Այդ զեկուցման մեջ ընկեր Ստալինը պատմեց սոցիալիզմի մեծ հաղթանակի մասին մեր յերկրում և վորոշեց հետագա ուղին, վորով ԽՍՀՄ ժողովուրդները կգնան առաջ, դեպի կոմունիզմ:

Համագումարում հանդես յեկավ ընկեր Մոլոտովը ԽՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման յերրորդ հնգամյա պլանի– ստալինյան յերրորդ հնգամյակի վիթխարի պլանի մասին զեկուցումով:



Համագումարը լսեց ընկեր Ժդանովի զեկուցումը ՀամԿ(բ)Կ կանոնադրության փոփոխությունների մասին:

Համագումարի ընդունած՝ ՀամԿ(բ)Կ նոր կանոնադրությունն արտացոլեց կոմունիստական կուսակցության կազմակերպական ամրության և հզորության աճումը, ներկուսակցական դեմոկրատիզմի ծաղկումը և ստալինյան հավատարությունն ու կայունությունը դեպի կուսակցության անդամները:

18-րդ համագումարում ամբողջ աշխարհի առաջ կրկին անգամ ցուցադրվեց մեր կուսակցության սքանչելի, պողպատե միասնությունը: Բոլշևիկյան շարքերի համախմբվածությունը հիմնված է ամբողջ խորհրդային ժողովրդի բարոյական և քաղաքական միասնության վրա:

Խորհրդային ժողովուրդը հաջողությամբ պայքարում է ՀամԿ(բ)Կ 18-րդ համագումարի դրած պատմական խնդրի լուծման համար— տնտեսական տեսակետից ես հասնել ու անցնել կապիտալիստական գլխավոր յերկրներից:

## ԱՆՎԱՅՐԷՋՔ ԹՌԻՉՔ ԱՏԼԱՆՏՅԱՆ ՕՎԿԻԱՆՈՍԻ ՎՐԱՅՈՎ

Ստալինյան ավիացիայի հպարտ բազեներն արդեն քանիցս աշխարհին հիացմունք են պատճառել իրենց հերոսական թռիչքներով։ 1939 թվի ապրիլի 28-ին աշխարհը նորից ցնցվեց խորհրդային յերկու օդաչուների հիանալի սխրագործությամբ։ Խորհրդային Միության Հերոս Վլադիմիր Կոկկինակին և շտուրման Միխայիլ Գորդիենկոն այդ օրն Ատլանտյան օվկիանոսի վրայով նշանավոր անվայրէջք թռիչք կատարեցին Մոսկվայից դեպի Հյուսիսային Ամերիկա։

Ապրիլի 28-ի արշալույսին, բարձրանալով Շչյոլկովյան օդանավակայանից, նրանք յերկնաքարի արագությամբ «Մոսկվա» կարմրաթև ինքնաթիռը տարան Հյուսիսային Ատլանտիկայի մռայլ ռայոնների վրայով և նույն օրվա վերջին պողպատե թռչունն իջեցրին ամերիկյան ցամաքամասի վրա։

Նրանք թռան նոր մարշրուտով, վորով դեռևս չէր թռել վո՛չ մի ինքնաթիռ և



իրենց անօրինակ թռիչքով տապալեցին բուրժուական այն թեորիան, թե Ատլանտյան քամիներն իբր թե անհաղթահարելի յեն ավիացիայի համար։ Խորհրդային պանծալի օդաչուները կրկին անգամ ապացուցեցին, վոր այնտեղ, վորտեղով թռչելը բուրժուական օդաչուների ուժից վեր է — համարձակ սավառնում են սոցիալիզմի յերկրի օդաչուները։

## ՀԵՐՈՍԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԽԻԶԱԽՈՒԹՅՈՒՆԸ ՅԵՎ ԱՐԻՈՒԹՅՈՒՆԸ

Տարեց-տարի ամրանում է մեր ժողովրդի սիրելի զավակը — Բանվորա- Գյուղացիական Կարմիր Բանակը։ Ստալինյան հնգամյակների տարիներին նա մեծապես ավելացրել է իր ուժերը, սպառազինվել է մարտական առաջնակարգ տեխնիկայով։

1939 թվի ամռանը, Հեռավոր Մոնղոլիայում, Խալխին-Գոլ գետի վրա, Կարմիր Բանակի քաջարի մարտիկներն ամբողջ աշխարհին ակնառու կերպով ցույց տվին խորհրդային զենքի ուժն ու հզորությունը։

Կարմիր բանակի հարվածների տակ ագրեսորը հարկադրված յեղավ զենքը վայր դնել և նահանջել:

«Ասախի» թերթն այդ առթիվ գրում եր. «Մինչև այժմ մենք չգիտեյինք, թե վո՞րքան մեծ չափով են սարքավորված Խորհրդային Միության զորքերի մոտոռացված զորամասերը: Այժմ այդպիսի անսպասելիությունից զարմացած շատ մարդիկ կան»:

Պարտվածի խոստովանությունը նրա պարտության լավագույն ապացույցն է: Դա ցույց է տալիս նաև այն, թե ինչպիսի մեծ կատարելության է հասել Կարմիր Բանակը մարտական տեխնիկայի տիրապետման և օգտագործման գործում:

## ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ

1939 թվի օգոստոսի մեկին Մոսկվայում բացվեց Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը: Ցուցահանդեսի բացման օրը հանդիսացավ կոլտնտեսային մեծագույն տոն:

Տասնյակ հազարավոր առաջավոր կոլ-



տնտեսություններ, խորհտնտեսություններ, մեքենա-տրակտորային կայաններ, կոլտնտեսային ֆերմաներ, խորհրդային գյուղատնտեսության ավելի քան 150 հազար առաջավոր մարդիկ ցուցահանդեսում ցուցադրեցին մեր կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների փայլուն նվաճումները, սոցիալիստական գյուղատնտեսության անչափ առավելությունները:

Պատահական չէ, վոր Խորհրդային Միությունը հանդիսանում է աշխարհի ամենահացառատ յերկիրը: Նա արտադրում է ցորենի համաշխարհային արտադրանքի 31 տոկոսը, հաճարի 56 տոկոսը, գարու 24 տոկոսը, վարսակի 31 տոկոսը, սիսեռի ու վոսպի 80 տոկոսը: Ցորենի և հաճարի բերքատվության տեսակետից ԽՍՀՄ-ն անցել է գյուղատնտեսական տեսակետից առավել հզորագույն յերկու յերկրներից— Ամերիկայի Միացյալ Նահանգներից և Կանադայից:

Ցուցահանդեսն աշխատեց 85 օր և փակվեց մինչև 1940 թվի ամռանը: 1940 թվի ցուցահանդեսին մասնակցելու պատվի համար մրցում է կոլտնտեսականների ամբողջ բազմամիլիոն բանակը:

# Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԱՆՎԱՆ ՖԵՐԳԱՆԱՅԻ ՄԵԾ ՋՐԱՆՑՔԸ

Կոլտնտեսականների բոլշևիկյան կազմակերպվածության ուժով 1939 թվին ստեղծվեց մեծագույն կառուցումը— Ֆերգանայի Մեծ ջրանցքը։

Ոգոստոսի մեկին, Մոսկվայում Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի բացման որը, Ֆերգանայի 160 հազար կոլտնտեսականներ իրենց նախաձեռնությամբ, Ստալինի անունը շուրթերին, յերգով ու յերաժշտությամբ դուրս յեկան ջրանցքի կառուցման։ Աշխատանքային աննախընթաց խանդավառությամբ համակված մարդիկ 45 որվա ընթացքում փորեցին 270 կիլոմետր յերկարությամբ ջրանցք։ Վոռոգման կարևորագույն օբյեկտների շինարարությունները այդպիսի տեմպ չեն ունեցել։

Այնտեղ, վորտեղ խոնավության բացակայության պատճառով խանձվում եյին տասնյակ հազարավոր հեկտար ամայի, խոպան թողնված հողեր, այժմվանից կծաղկեն կոլտնտեսային դաշտեր ու այգիներ։



# ԱՐԵՎՄՏՅԱՆ ՈՒԿՐԱԻՆԱՅԻ ՅԵՎ ԱՐԵՎՄՏՅԱՆ ԲԵԼՈՌՈՒՍԻԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ

1939 թվի սեպտեմբերի 17-ը մեր հայրենիքի պատմության մեջ կմտնի վորպես նշանավոր տարեթիվ։ Այդ որը ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահ ընկեր Վ. Մ. Մոլոտովը ռադիոյով ճառ արտասանեց։ Մինչ այդ, լեհ-գերմանական պատերազմի առաջ բերած անցքերը ցույց տվին Նախկին լեհական կարկատանակազմ պետության լիակատար անանկությունը, մի պետություն, վորը կառուցվել եր ազգային փոքրամասնությունների ճնշելու և կեղեքելու վրա։ Լեհաստանի վողորմելի կառավարությունը փախավ, յերկիրը, ժողովրդին, բանակը թողնելով բախտի քմահաճույքին։

«Խորհրդային կառավարությունից,— հայտարարեց ընկեր Մոլոտովը,— նույնպես չի կարելի անտարբեր վերաբերմունք պահանջել դեպի արյունակից ուկրաինացիների և բելոռուսների բախտը, վորոնք ապրում են Լեհաստանում և առաջ գտնվ-

վում էլին երավաղուրկ ալդերի վիճակում, իսկ այժմ նաև բոլորովին պատահմունքի կամքին թողնված: Մարհրդային կառավարությունն իր սրբազան պարտականությունն է համարում օգնության ձեռք պարզել իր լեղբայր ուկրաինացիներին և լեղբայր բելոռուսներին, վորոնք ապրում են Լեհաստանում»:

Նույն օրը Կարմիր Բանակի զորամասերն անցան սահմանը, վորպեսզի իրենց պաշտպանության տակ վերցնեն Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի բնակչության կյանքն ու ունեցվածքը:

## ՍՏԱԽԱՆՈՎՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՆՈՐ ՁԵՎԵՐԸ

Անձնվեր աշխատանքով, աշխատանքի արտադրողականության բարձրացումով, պլանային առաջադրանքների ու նորմաների գերակատարումով, գիտակցական բարձր կարգապահությամբ— ահա թե ժողովուրդն ինչով է օգնում հերոսական Կարմիր Բանակին՝ նրա պատմական խնդիրների լուծման մեջ:



Ստալինյան հնգամյակի յերկրորդ տարին հավերժացավ ստախանովյան շարժման նոր ձևի— բազմադազգյահավորների շարժման յերևվան գալով: Այդ հիանալի նախաձեռնությունը դրեթե միաժամանակ ծնվեց Խարկովի՝ Վ. Մ. Մոլոտովի անվան դազգյահաշինական գործարանում և Ուրալի՝ Սերգո Որջոնիկիձեյի անվան ծանր մեքենաշինության Լենինի շքանշանակիր գործարանում:

Բազմադազգյահ սպասարկումն աշխույժ արագությամբ տարածվեց մեր յերկրի գործարաններում:

1939 թվի գարնանը Ստալինգրադի յերկաթուղային կոլտնտեսականներ Արկադի Գուրովի և Գեորգի Կոլենկովի նախաձեռնությամբ սկսվեց հարյուրփութական բրիգադիրների շարժումը՝ բրիգադի ցանքատարածության ամբողջ գանգվածի յուրաքանչյուր հեկտարից վոչ պակաս քան 100 փութ հացահատիկի բերք հավաքելու համար:

Հարյուրփութական բրիգադիրների շարժումն այն նորությունն է գյուղի ստախանովյան շարժման մեջ, վորը պետք է հանդեցնի բարձր ու կայուն բերքի նվաճմանը, տարեկան 8 միլիարդ փութ հացա-

հատիկի արտադրության վերաբերյալ ստալինյան առաջադրանքի արագ լուծումը:

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՌԼԱՄԵՆՏԻ ՍԵՍԻԱՆ

1939 թվին ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը Մոսկվայում յերեք անգամ գումարեց իր սեսիաները՝ պետական կարևորագույն հարցերը լուծելու համար: Մայիսի 25-ից մինչև 31-ը տեղի ունեցավ Յերրորդ սեսիան, վորը քննարկեց և հաստատեց ԽՍՀՄ-ի 1939 թվի պետական բյուջեն՝ ավելի քան 156 միլիարդ ռուբլի գումարով: Խորհրդային մեծ տերության բյուջեն արտացոլեց սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության հզոր զարգացումը, աշխատավորության կուլտուրայի և կյանքի մակարդակի անշեղ վերելքը, մեր հայրենիքի պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը:

Սեսիայում ԽՍՀՄ միջազգային դրության և արտաքին քաղաքականության մասին զեկուցեց Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահ և Արտաքին Գործերի



Ժողովրդական Կոմիսար ընկեր Վ. Մ. Մոլոտովը: ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդն ամբողջությամբ և լիովին հավանություն տվեց Խորհրդային կառավարության արտաքին քաղաքականությանը:

Ոգոստոսի 28-ից մինչև սեպտեմբերի մեկը տեղի ունեցավ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի արտահերթ, Չորրորդ սեսիան, վորը հաստատեց գյուղատնտեսական հարկի, ընդհանուր զինվորական պարտականության վերաբերյալ օրենքները և ռատիֆիկացիայի յենթարկեց Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության ու Գերմանիայի չհարձակման պայմանագիրը, վորը կնքվել եր Մոսկվայում, 1939 թվի ոգոստոսի 23-ին:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի արտահերթ, Հինգերորդ սեսիան տեղի ունեցավ հոկտեմբերի 31-ից մինչև նոյեմբերի 2-ը: Լսելով Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Նախագահի և Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսար ընկեր Վ. Մ. Մոլոտովի զեկուցումը Խորհրդային Միության արտաքին քաղաքականության մասին, սեսիան հսկայական միաբանությամբ հավանություն տվեց կառավարության արտաքին քաղաքականությանը:

Սեսիան վորոշեց բավարարել Արևմտյան Ուկրաինայի Ժողովրդական Ժողովի և Արևմտյան Բելոռուսիայի Ժողովրդական Ժողովի խնդիրը և ընդունեց Արևմտյան Ուկրաինան ու Արևմտյան Բելոռուսիան Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմի մեջ մտցնելու որենքը:

13 միլիոն նախկին ստրուկներ դարձան ազատ մարդիկ, իրենց յերջանկության, իրենց հայրենիքի ազատության ու հզորության մարտիկներ: 1939 թվից մեր յերկիրն ունի 183 միլիոն խորհրդային քաղաքացիներ:

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

1939 թիվը ԽՍՀՄ պատմության մեջ կմտնի վորպես նրա արտաքին քաղաքականության նշանավոր հաջողությունների տարի:

Օգոստոսի 23-ին Մոսկվայում ստորագրված խորհրդային-գերմանական չհարձակվելու պայմանագիրը հանդիսացավ,



ինչպես ասաց ընկեր Մոլոտովը, «շրջադարձային կետ Յեվրոպայի, և՛ վոչ միայն Յեվրոպայի պատմության մեջ»: Դրանով իսկ խաղաղությունն ապահովվեց Յեվրոպայի տերիտորիայի զգալի մասում:

Բարեկամության և սահմանազծի վերաբերյալ պայմանագիրը ԽՍՀՄ-ի ու Գերմանիայի միջև, Յեվրոպայի յերկու ամենամեծ պետությունների միջև, վորն ստորագրվեց Մոսկվայում, սեպտեմբերի 28-ին, հանդիսացավ խաղաղության քաղաքականության փայլուն ապացույցը, մի քաղաքականության, վորը հետևողականորեն, հաստատ կերպով և անկեղծորեն անց է կացվել և անց է կացվում Խորհրդային կառավարության կողմից, համաձայն Լենինի-Ստալինի կուսակցության սկզբունքների:

ԽՍՀՄ-ի ու Եստոնական հանրապետության փոխադարձ օգնության պակտը և առևտրական համաձայնությունը, վորոնք ստորագրվել են Մոսկվայում, սեպտեմբերի 28-ին. Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության և Լատվիական հանրապետության փոխադարձ օգնության պակտը, վորն ստորագրվել է հոկտեմբերի 5-ին, Վիլնո քաղաքը և Վիլ-

Ռոյի մարզը լիտվական հանրապետությանը հանձնելու ու Խորհրդային Միության և Լիտվայի փոխադարձ օգնության պայմանագիրը, որն ստորագրվել է հոկտեմբերի 10-ին,—այս բոլոր փաստաթղթերը փայլուն կերպով ցույց են տալիս ՍՍՀՄ-ի վարած խաղաղության հետևողական քաղաքականությունը:

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՖԻՆԼԱՆԴԱԿԱՆ ՕՋԱԽԻ ԼԻԿՎԻԴԱՑԻԱՆ

1939 թվին, յերկու ամսվա ընթացքում, Խորհրդային կառավարությունը բանակցություններ վարեց ֆինլանդական կառավարության հետ: Սակայն ֆինլանդական «կառավարողները»—պարոնայք Կայանդերները և Տաններները—չցանկացան ընդհանուր լեզու գտնել ՍՍՀՄ-ի կառավարության հետ: Անգլո-ֆրանսիական իմպերիալիստներին հաճոյանալու համար նրանք ղեկավարվեցին վո՛չ թե խաղաղության ձգտումով, այլ խորհրդային յերկրի նկատմամբ թշնամության զգացմունքով: Բանակցությունները ձգձգվեցին առանց



վորևե արդյունքի: Այդ միջոցին խորհրդային-ֆինլանդական սահմանի վրա սկըսվեցին ֆինլանդական ռազմամոլների կողմից վեցուցիչ պրովոկացիաներ, ընդհուպ մինչև Լենինգրադի մոտակա մեր զորամասերի հրետանային գնդակոծումը, վորը զոհեր առաջ բերեց կարմիր բանակայիններ շարքերում:

1939 թվի նոյեմբերի 29-ին ռադիոխոսով հանդես յեկավ ՍՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Նախագահ ընկեր Վ. Մ. Մոլոտովը: Նա պատմեց Խորհրդային կառավարության փորձերի մասին՝ ֆինլանդական կառավարության ուղղված գործնական առաջարկություններով կանխել պրովոկացիայի կրկնումը: Այդ փորձերը վոչ միայն հավանության չարժանացան, այլև նորից դեմ առան ֆինլանդիայի կառավարող շրջանների թշնամական քաղաքականությանը:

Իր ճառն ընկեր Վ. Մ. Մոլոտովը վերջացրեց հետևյալ խոսքերով՝

«Մեր միջոցառումների միակ նպատակն է — ապահովել Խորհրդային Միության և առանձնապես յերեք ու կես միլիոնանոց բնակչություն ունեցող Լենինգրադի անվտանգությունը... Այդ խնդիրը հարկ է

*լինում լուծել հենց իր՝ Խորհրդային Միության ջանքերով, Ֆինլանդական ժողովրդի բարեկամական գործակցությամբ»:*

*Խորհրդային ժողովուրդը լիակատար միաբանությամբ ընդունեց ընկեր Վ. Մ. Մոլոտովի ելույթը: Ամբողջ յերկրում տեղի ունեցած միտինգներում ու ժողովներում ընդունված բանաձևերով աշխատավորները վողջունում եյին իրենց կառավարության իմաստուն վորոշումը: Նրանք պահանջում եյին վերջ դնել ֆիննական ռազմամոլների և տիկնիկային մինիստրների լկտի պրովոկացիաներին:*

*Դեկտեմբերի 2-ին փոխադարձ օգնության և բարեկամության պայմանագիր ստորագրվեց Խորհրդային Միության և Ֆինլանդական դեմոկրատական հանրապետության միջև, վորը պայքարում է ֆիննական ժողովրդին դահիճների և պատերազմի պրովոկատորների լծից ազատագրելու համար: Կարմիր բանակի քաջարի մարտիկները ֆիննական բարեկամ ժողովրդին յեղբայրական օգնություն են ցույց տալիս նրա ազատագրական պայքարում:*



# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՅԵՎ ԱՆԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԸ

1939 *թվի վերջին որերը սոցիալիզմի յերկրին բերին կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի նոր փայլուն հաղթանակ: Աշխատավորության դեպուտատների տեղական Խորհուրդների ընտրությունների ընտրական կամպանիան նոր ուժով Լենինի-Ստալինի կուսակցության շուրջը համախմբեց խորհրդային միլիոնավոր քաղաքացիներին: Այդ ընտրություններին կուսակցության անդամներն ընթանում եյին աշխատավորության ամբողջ մասսայի հետ միասին, վորովհետև ժողովուրդը և կոմունիզմը, հայրենիքը և կոմունիզմը միացել եյին մեկ անքաժանելի ամբողջության մեջ:*

***

*Խորհուրդների յերկիրը թևակոխել է նոր,* 1940 *թիվը: Ռուս մեծ քննադատ և բոցաշունչ հայրենասեր Վիսարիոն Բելինսկին, կարծես թե նախատեսելով իր հայրենիքի այսօրվա հզոր ծաղկումը, սրանից* 100 *տարի առաջ գրել է.*

*«Նախանձում ենք մեր թոռներին ու ծոռներին, վորոնց վիճակված է տեսնել քաղաքակիրթ աշխարհի գլուխ կանգնած 1940 թվի Ռուսաստանը, վորն որենքներ է տալիս թե՛ գիտությանը, թե՛ արվեստին և հարգանքի ակնածալի տուրք է ընդունում ամբողջ լուսավոր մարդկությունից»:*

---



Պատ. խմբագիր՝ Ս. ՂԵՎՈՆԴՅԱՆ

Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր՝ Զ—1059

Պատվեր № 85. տիրաժ՝ 6420

Հանձնված է արտադրության՝ 24/I 1940 թ.

Ստորագրված է տպագրության՝ 14/II 1940 թ.

---

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «Խ. Հ.» հրատարակչության տպարան, Երևան

